Ն Կրուպսկայայի հուշերում հանդիպեցի ֆիննական բանվոր Օսկար Էնգբերգի անվանը, որն, իբրև արտաքսված, 1898—1900 թվականներին Լենինի հետ ապրելիս է եղել Արևելյան Սիբիրի Շուշինսկոյե գյուղում:

«Գուցե դեռ ողջ է նա»,— մտածեցի ես և որոշեցի գտնել, զրուցել հետը: Ինձ օգնեց Հելսինկֆորսի Բանվորական Տան արխիվի վարիչ Աննա Վիիկը, տալով Էնգբերգի հասցեն: Նա ապրում էր քաղաքից երեսուն կիլոմետր հեռու:

Դա 1935 թվականին էր: Էնգբերգն արդեն վաթսունամյա, ճերմակահեր մարդ էր, իսկ Լենինի հետ ծանոթանալիս եղել էր քսան տարեկան երիտասարդ: Նա սկզբում կասկածանքով, վախվխելով ընդունեց ինձ, կարծելով, թե իշխանության կողմից ուղարկված մեկն եմ: Այդ տարիներին Ֆինլանդիայում հետապնդում, հալածում էին կոմունիստներին: Բայց երբ լսեց Լենինի անունը, իմացավ իմ գալու նպատակը, այլևս ամեն կասկած փարատվեց, հաճույքով համաձայնեց պատմել, ինչ որ հիշում էր այն օրերից:

Այն ժամանակ ես Պուտիլովի գործարանում խառատի աշակերտ էի,— սկսեց Օսկար Ալեքսանդրովիչը:— Մենք բանվորական գաղտնի խմբակ ունեինք և հաճախ հավաքույթ էինք ունենում մեր ընկերներից մեկի տանը: Մի անգամ մեզ մոտ զրույցի եկավ մի երիտասարդ, որին կոչում էին Նիկոլայ Պետրովիչ: Տարիքով մեզնից մի քիչ էր մեծ, բայց արտակարգ խելքի ու բանիմացության համար մենք մեր մեջ նրան «Ծերուկ» էինք ասում:

Մի անգամ երեկոյան ոստիկանները գործարանում ձերբակալեցին մեր խմբակի անդամներից մի քանիսին, իսկ մնացածիս հավաքեցին, սպառնացին, թե նույն վիճակին կարժանանանք մենք էլ, եթե մասնակցենք որևէ գաղտնի հավաքույթի: Պարզվեց, որ վարպետն էր մեզ մատնել, մենք էլ վճռեցինք մի լավ դաս տալ նրան: Բռնեցինք ու ճռճռան ցրտին մի տակառ սառը ջուր լցրինք գլխին, ես էլ մի քանի հատ հասցրի քիթ ու մռութին: Նույն երեկոյան ինձ ձերբակալեցին, ապա դատեցին ու երեք տարի ժամանակով աքսորեցին Արևելյան Սիբիր:

Գարնանը արտաքսվածների խմբի հետ հասա Շուշինսկոյե:

Առաջին գործս եղավ ուրյադնիկից հարցնել՝ այստեղ արդյոք կա՞ն քաղաքական արտաքսվածներ:

— Կան,— ասաց,— բայց մի՛ ուրախանա: Մեկը լեհ է՝ Պրոմինսկին, մյուսը ռուս՝ Ուլյանովը, իսկ դու, ֆինն, երրորդը կլինես: Թերևս լեզու չգտնեք իրար հետ:

Գնացի ռուսի մոտ: Երբ ցույց տրված տան դուռը ծեծեցի, դուրս եկավ, ով լինի լավ է,— պիտերցի Ծերու՜կը:

— Բարև՛ ձեզ,— ասացի,— Նիկոլա՛յ Պետրովիչ, պուտիլովցի տղաներից՝ ձեզ ողջույն:

— Դու՛ք Պիտերի՞ց եք,— ուրախացավ Ուլյանովը:— Բայց ես Նիկոլայ Պետրովիչ չեմ, այլ՝ Վլադիմիր Իլյիչ:— Եվ ձեռքը ուսիս դրած՝ ինձ տարավ իր սենյակը: Արդեն ինն ամիս կար, ինչ նա Շուշինսկոյեում էր և, երևում էր, շա՜տ էր կարոտել Պիտերին: Ամբողջ գիշերն ասացինք-խոսեցինք, և առավոտյան սենյակ վարձեցի գեղջուկ Շանգինի մոտ՝ Զիրյանովի տան դիմաց, որտեղ բնակվում էր Ուլյանովն ինքը:

Վլադիմիր Իլյիչն ինձ հետ զրուցելիս զգաց, որ ես քաղաքականապես բոլորովին խակ, անուսում մարդ եմ:

— Եկեք պարապենք, Օսկա՛ր Ալեքսանդրովիչ,— ասաց ինձ մի օր,— համարենք, թե ուսանող եք:

Ներքևի դարակից մի գրքույկ հանեց. դա «Գերմանիայի սոց-դեմոկրատական կուսակցության Էրֆուրտի ծրագիրն» էր: Մենք սկսեցինք պարա-





պել օրինակից։ Նա գիրքը գերմաներենից ռուսերեն էր թարգմանում, իսկ ես գրի էի առնում։ Հետո նա ինձ բացատրում էր ծրագրի յուրաքանչյուր կետը։

Վլադիմիր Իլյիչը շատ էր աշխատում։ Գյուղի հյուսնը նրա գծագրով մի գրակալ էր շինել, և Իլյիչը կանգնած էր աշխատում։ «Այդպես ավելի լավ է առողջության համար»,— ասում էր նա։

# ՖԻՆՆ ԲԱՆՎՈՐԻ ՊԱՏՄԱԾԸ

ԶՈՅԱ ՎՈՍԿՐԵՍԵՆՍԿԱՅԱ

Նկ. ԱՐԱՐԱՏ ԽԱՆՋԱԴՅԱՆԻ

Այն ժամանակ նա գրում էր «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» գիրքը և գլուխ առ գլուխ կարդում էր ինձ ու Պրոմինսկուն։

Լարված աշխատանքից հետո լավ էլ հանգստանալ գիտեր։

Մինուսինսկի ճահճուտներում ամեն քայլափոխի նապաստակի կհանդիպեիր։ Երեխաները նույնիսկ փայտով էին խփում սպանում դրանց։ Իլյիչը սիրում էր որսորդություն, բայց նապաստակներ չէր խփում։ Դա, ասում էր, պարզապես սպանդ է, ոչ թե որսորդություն։ Նա սիրում էր թափառել անտառում, ուսումնասիրել թռչունների սովորությունները, ձյան վրայի հետքով որոշել, թե ինչ գազան կլինի անցած, իսկ երբեմն պարզապես նստում էր մի կոճղի և հայացքը հառած հեռուն՝ նայում, հիանում էր բնության քմահաճ խաղերով։

Ձմռանը նա որոշեց Շուշա գետի վրա սահադաշտ սարքել երեխաների համար։ Ամեն առավոտ ինձ քարշ էր տալիս այնտեղ՝ ձյունը մաքրելու։

— Ախր զուր տեղը չարչարվելու ի՞նչ կարիք կա, Վլադիմիր Իլյիչ,— ասում եմ։— Մեկ է, մինչ մենք մաքրում ենք, ձյունը նորից է ծածկում սահադաշտը։

— Մեր հավաքած ձյունը ետ չի վերադառնա,— ծիծաղում է նա,— նորը կգա, այն էլ կմաքրենք և սահադաշտի շուրջը թումբ կգոյանա։

Շուշենսկոյեի երեխաները այդ թմբի վրա ամեն երեկո սերմնագռավների նման հավաքվում նստում էին և, մայրու պտուղները ձեռքներին կրծոտելով, սպասում քեռի Ուլյանովին։

Վլադիմիր Իլյիչը երեխաներից պակաս չէր սիրում չմշկել։ Վազում մտնում էր սահադաշտ և սկսում հանդարտ պտտվել, երեխաներն էլ, ինչպես ձկները գետակում, երամ-երամ գալիս էին հետևից։ Հետո մեծ շրջան էր անում, արագացնում ընթացքը. իսկ երեխաներն էլ ամբողջ թափով



սլանում էին, որ հասնեն ու անցնեն։ Բայց չէր թույլ տա իրենից անցնել. էհ, քանի որ մրցում ենք, եկեք մրցենք։

Լինում էր, որ երեխաները բաժանվում էին երկու խմբի. մի խումբը գնում էր նրա կողմը, մյուսը՝ իմ, սկսում էինք իրար քաշքշել, ձնակոլոլ անել, ծիծաղել, աղմուկ-աղաղակ գցել, մինչև որ լրիվ հալից ընկնում էինք։ Իսկ այս բոլորից հետո դեռ ստիպում էր, որ սահադաշտն էլ մաքրենք։

Վլադիմիր Իլյիչն ինձ սովորեցրեց ընթերցանությամբ զբաղվել։ Բայց այնպես, ինչպես ինքն էր կարդում՝ ժամերով, ես չէի կարող. գլուխս ծանրանում, բթանում էր։ Ոչ ոքի և ոչինչ գրելու բան չունեի։ Ուրիշ զբաղմունք էլ չէի գտնում։ Իսկ նրա ամեն ժամը բաշխված էր, ծրագրված, զբաղված։ Գարնանը նույնիսկ սկսեց մարգեր փորել և ինձ խորհուրդ էր տալիս բանջարանոց անել, իսկ ես էլ հողի հետ գլուխ չունեի, դա իմ բանը չէր։ Այդպես էլ չգիտեի ինչով զբաղվեի։ Քայլում էի, չիմանալով, թե ուր եմ գնում։ Ձեռքերս կշռաքարերի պես գնում-գալիս էին կողքերիցս։ Առաջ նույնիսկ չէի նկատում ձեռքերիս գոյությունը։ Այսպես, մի տեսակ՝ ցավ էր ընկել մեջս, չգիտեի ինչ անեի։

Վլադիմիր Իլյիչը ամեն օր նամակ էր գրում։ Գրում էր Մոսկվա՝ մորը, քույրերին, իսկ ավելի հաճախ՝ Պիտեր։ Ես այդ նամակները շաբաթը երկու անգամ տանում էի գավառական կենտրոն՝ ուղարկելու և տեսնում էի, որ Պետրոգրադ ուղարկվող նամակները հասցեագրված են Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայային։

—Օսկա՛ր Ալեքսանդրովիչ, հարսնացուս շուտով գալու է,— մի անգամ ասաց Վլադիմիր Իլյիչը։

— Նադեժդա Կոնստանտի՞նովնան,— հարցրի։

— Ի՞նչ գիտեք, որ նա է։

— Դե, ես այսքան նամակներ եմ ստանում։ Պարզ է, թե այդքան հաճախակի ում կգրեն։

Վլադիմիր Իլյիչը ծիծաղեց.

— Նադեժդա Կոնստանտինովնան ձեզ համար դեղ կբերի։

Պրոմինսկու ընտանիքի հետ տեսնվում էինք համարյա ամեն օր։ Նա վեց երեխայի հայր էր և ձանձրանալու ժամանակ չուներ։

— Մենք պետք է սկյուռներ խըփենք,— մի օր առաջարկեց Ուլյանովը։— Պրոմինսկին վեց երեխա ունի ու վեց մուշտակ է պետք։ Յոթերորդն էլ շուտով աշխարհ կգա։



Հարկ եղավ նապաստակներ էլ խփել, որ ձմռանը հագուստ լիներ երեխաների համար։

Պրոմինսկու երեխաները հարազատի պես կապված էին Վլադիմիր Իլյիչի հետ։ Ազատ ժամանակ նա փոքրիկների հետ էր լինում։

Ես հաշվում էի աքսորիս յուրաքանչյուր օրը։ Գարունն սկսվեց. Շուշա գետը հորդացավ, ճամփաներով անցնել-դառնալ չէր լինում. ստիպված էի տանը նստել, ձանձրանալ։ Եվ այդ գյուղն ինձ համար բանտից վատ էր թվում։ Ես ինձ խմելու տվի։ Մի անգամ Ուլյանովը մոտս եկավ և տեսավ օղու շիշը առաջս դրած։ Զանպատվեց, նույնիսկ ոչ մի խոսք չասաց, բայց այնպիսի դառը հայացքով նայեց ինձ, որ իսկույն քեֆս թողեց։

Առավոտները նա գնում էր Շուշա գետի կողմերը։ Մերթ ձնծաղիկ էր բերում, մերթ՝ խատուտիկ, ապա երևացին նաև հովտաշուշաններ, և այսպես ամեն օր փոխում էր ծաղկամանի ծաղիկները։

Գլխի էի ընկնում, որ նա հարսնացուին է սպասում։

Նադեժդա Կոնստանտինովնան մոր հետ Շուշինսկոյե եկավ մայիսին։ Ուլյանովը որսի էր գնացել։ Զգիտեմ ինչու, նա այդ օրը նրանց չէր սպասում։ Օգնեցի, կապոցները ներս տարանք ու գնացի տուն։ Պառկեցի թախտին ու սկսեցի մտածել. հիմա Վլադիմիր Իլյիչն էլ իր ընտանիքն ունեցավ, էլ նրան պետք չեմ։ Բա ես ի՞նչ պիտի անեմ այս տաղտկալի գյուղում, ո՞ր պատին տամ գլուխս, ո՞նց կլինի վերջս...

Երեկոյան Վլադիմիր Իլյիչն ինձ իր մոտ կանչեց։ Զիրյանովի խրճիթում շատ մարդ կար։ Ուլյանովը բոլորին ծանոթացրեց հարսնացուի հետ։

Հետո ինձ ցույց տվեց մի զամբյուղ ու ասաց.

— Սա էլ դեղ՝ ձեր ցավի դեմ։

Ես բարձրացրի զամբյուղը. երկու փթից պակաս չէր գա։ Այ քեզ դեղ։ Բացեցի զամբյուղը և աչքերիս չհավատացի. ոսկերչական գործիքների լիակատա՞ր մի հավաքածու։ Ինչ-որ մի անգամ պատմել էի Վլադիմիր Իլյիչին, թե պատանի ժամանակ չորս տարի աշակերտ եմ եղել ոսկերչի մոտ։ Հիշում եմ, ասացի նաև, որ եկեղեցում և մինուսինցի հարուստների մոտ կարելի է գործ գտնել։ Պարզապես բարձրաձայն մտածել էի ու մոռացել։ Իսկ Վլադիմիր Իլյիչը ոչինչ չէր մոռանում։

— Լավ դեղ է, չէ՞,— հարցրեց։

Հասկացել էր, ինձանից լավ էր հասկացել, որ ձեռքերս աշխատանքի են կարոտում։

Հենց այդ գիշեր ես նշանդրեքի մատանիներ սարքեցի Վլադիմիր Իլյիչի և Նադեժդա Կոնստանտինովնայի համար, բայց ոչ թե ոսկուց, այլ՝ պղնձից, սակայն ոսկերչական արվեստի բոլոր կանոններով։

Նադեժդա Կոնստանտինովնայի գալուց հետո ոչ միայն չմեկուսացա, այլև ասես դարձա նրանց ընտանիքի անդամը։ Ամեն երեկո նրանց մոտ էի, իսկ օղին լրիվ թողեցի։ Նադեժդա Կոնստանտինովնան չէր մոռանում ամեն երեկո ինձ հյուրասիրել տապակած կարտոֆիլով։



— Հիմա նոր ուսուցչուհի կունենաք,— ասաց Ուլյանովը և կնոջը մանրամասն պատմեց, թե ինչով էինք զբաղվում մինչև իր գալը։

Որոշեցինք ուսումնասիրել «Կոմունիստական մանիֆեստը»։ Այդ գիրքը նույնպես գերմաներեն էր։ Նադեժդա Կոնստանտինովնան, ինչպես Վլադիմիր Իլյիչն էր անում, ռուսերեն թարգմանելով թելադրում էր, իսկ ես գրի էի առնում։ Ապա վերցնում էր տետրը և սխալներս ուղղում։ Ես այն ժամանակ ինչպես հարկն է չէի գիտակցում, որ այդ երկու հոգին, որոնք իրենց նվիրել էին բանվոր դասակարգին ծառայելու գործին, ինձ՝ մեկ բանվորիս համար ստեղծել էին մի իսկական համալսարան։

Ես այնպես ընտելացա նրանց, որ երբ եկավ նրանց մեկնելու ժամանակը, իսկ իմը դեռ ինն ամիս կար, ուղղակի գլուխս կորցրի։

Ի հիշատակ մեր բարեկամության, մեր մտերմության, ես Նադեժդա Կոնստանտինովնայի համար սարքեցի պղնձե մի կրծքազարդ, որի վրա պատկերել էի բաց գիրք ու վրան գրել. «Կարլ Մարքս»։

Նադեժդա Կոնստանտինովնան ասաց, որ այդ կրծքազարդը կպահի ամբողջ կյանքում։

Ձմեռային մի երեկո նրանք մեկնեցին։ Երբ բոժոժները լռեցին, ես ու հարևանիս տղան՝ Մինկան, մտանք նրանց սենյակը. մի տեսակ որբացած, ամայացած էր թվում ամեն ինչ մեր շուրջը և մեր մեջ։ Նոր միայն իսկականից հասկացա, թե ինչ բարեկամներ էի կորցրել։

Գնալուց առաջ Վլադիմիր Իլյիչը ինձ նվիրեց իր լուսանկարը։ Այժմ ես այն պահում եմ ծեղնահարկում, որովհետև եթե ընկնի ֆաշիստ-լապուասականների ձեռքը, վերջս լավ չի լինի։ Ես ունեմ նաև Վլադիմիր Իլյիչի գիրքը՝ «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում», որը ուղարկեց ինձ Շուշենսկոյե, հենց որ նոր լույս տեսավ։ Պահպանել եմ նաև այն տետրերը, որոնց մեջ գրի էի առնում Վլադիմիր Իլյիչի և Նադեժդա Կոնստանտինովնայի՝ ինձ համար արած թարգմանությունները։

1901 թվականին, երբ աքսորից վերադարձա, ինձ արգելեցին բնակվել արդյունաբերական կենտրոններում։ Գնացի Վիբորգ, աշխատանքի անցա երկաթուղային արհեստանոցում։ Ես ոստիկանության հսկողության տակ էի, չէի կարող կապվել



ընկերներիս հետ։ Այստեղ ոչ ոքի չէի ճանաչում և աստիճանաբար հեռացա քաղաքական գործերից։

1906 թվականին Լենինը Վիբորգ եկավ։ Հիմա նոր եմ իմանում, որ այն ժամանակ այնտեղ հրատարակվում էր բոլշևիկյան «Պրոլետարի» թերթը։ Մի օր, երբ աշխատանքից վերադառնալով նստեցի ճաշելու, դուռը ծեծեցին։ Դուրս եկա, տեսնեմ՝ Վլադիմիր Իլյիչն է։

Ներս հրավիրեցի, միասին ճաշեցինք։ Հարցուփորձ արեց իմ մասին, թե ինչով եմ զբաղված, ինչ եմ մտադիր անելու... Ես արդեն ընտանիք ունեի՝ կին, երեխաներ։ Ես, լուռ, աչքերս խոնարհեցի։ Վլադիմիր Իլյիչը ոչինչ չասաց, միայն հարցրեց, թե արդյոք կարիքի մեջ չե՞մ։

Դրանից հետո էլ չեմ տեսել նրան։

Օ՜հ, ինչպե՜ս կուզենայի գեթ մի անգամ աչքովս տեսնել Մոսկվան, լինել Կրեմլում, դամբարանում, խոնարհվել Վլադիմիր Իլյիչի առաջ,— ասաց Օսկար Ալեքսանդրովիչը՝ ավարտելով հուշերը։



# ՄԱՅԻՍ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Երգում են հավքերը Նորքում,
Հովերը երգով են գալիս,
Արևը զարթոնք է երգում,
Ծառերը երգում են մայիս։
Դաշտերը բացել են հանդես,
Մրցում են բույրով ու գույնով,
Ջրերը շքերթ են կազմել,
Անցնում են գետերի հունով։
Քայլում է գարունը՝ կրծքին
Վարդերի դրոշներ պահած.
Գարունը հիշում է իր հին
Արյունոտ վարդերը խամրած։
Գարնան մեջ ճյուներ է հիշում,
Հիշում է արկեր ու վառոդ,
Ավերված բույներ է հիշում,
Ձագուկներ՝ մայրերի կարոտ։
Եվ հետո հրճվանքով նորից
Հաղթության երգեր է հիշում,
Աշխարհը հրից ու մրից
Ազատող ձեռքեր է հիշում։
Հիշում ու ցնծում է սրտանց
Այս կանաչ լիության համար,
Այս կապույտ երկնքի և այս
Գույների միության համար։
Արևը մայի՛ս է կանաչ,
Մայիսն էլ արև՛ է կարմիր,
Իմ փոքրի՛կ բարեկամ, դու՛ էլ,
Մայիսին քո եր՛գը խառնիր։

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ



# ՄԱՅԻՍՅԱՆ ԱՅԳԱԲԱՑ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Երբ արևը սարին թիկնեց
Եվ շաղ տվեց իր բոսորը,
Քո ժպիտից վարդը շիկնեց,
Կարմիր թափեց չորս բոլորը։

Ջվարթ բզզաց ոսկի մեղուն
Ու շտապեց ծաղկի գիրկը.
Քամին թերթեց ոսկի հեռուն,
Կարդաց արտի կանաչ գիրքը։



Մանուշակե իր աչքերով
Կապույտ բուրեց յասամանը,
Տուֆ քարերից՝ երկինք բերող՝
Մայիս բուրեց Երևանը։

Դրոշները ծփծփացին,
Թևեր առավ անգամ քարը,
Եվ մայիսյան այգաբացին
Կարմիր հագավ մեր աշխարհը։

# Փառապանծ մայիսյանը

Բավական ժամանակ նրանք չէին երևում «Պիոների» խմբագրությունում, և մենք արդեն կարծում էինք, թե նրանք անպայման գնացել են պատմական շատ հեռավոր ժամանակներում ճամփորդելու: Վերջապես մի օր հայտնվեցին նրանք, մեր հին բարեկամները՝ Արտակն ու Զոհրակը, պիոներական հագուստներով, կարմիր վզկապներ կապած, կարմիր աստղավոր գլխարկներով և պատմեցին մեզ այն ամենը, ինչ մենք նույնությամբ տպագրում ենք:

— Ոչ,— ասաց Արտակը,— մենք այնքան էլ հեռավոր ժամանակներ չենք գնացել: Բայց այն կարճ ժամանակաշրջանը, որում մենք եղանք, լի էր պարմանալի արագությամբ իրար հաջորդող շատ կարևոր իրադարձություններով:

— 1920 թվականին,—ասացին նրանք,— մենք ճանապարհորդում էինք Հայաստանում: Երևանը այն ժամանակ ընդամենը 30 հազար բնակիչ ունեցող գավառական քաղաք էր, հիմնականում կավաշեն տներով, նեղլիկ, ծուռումուռ փողոցներով, որոնցում կլոր տարին ցեխ էր: Քաղաքում սով էր, համաճարակ, փողոցներում թափառում էին հազարավոր որբ ու անտեր երեխաներ: Պատերի տակ, շքամուտքերում, այգիներում ծվարել էին անհամար սովատանջ, հիվանդ գաղթականների խմբեր: Նրանցից շատերը մահանում էին հենց մայթերի վրա, պատերի տակ, սակայն նրանց վրա ուշադրություն դարձնող չկար: Ամեն մեկն իր ցավն ուներ:

Մեզ հաճախ էին հանդիպում հարբած մաուզերիստների խմբեր. նրանք ամբարտավան հայհոյում, կրակում էին մարդկանց վրա. մարդիկ կարհուրանքով նրանցից հեռու էին փախչում: Սրտի կսկիծով մենք հեռացանք Երևանից: Ճանապարհին հանդիպող գյուղերը թշվառ տեսք ունեին, գետնամած, խղճուկ խրճիթներ, սովալլուկ, հոգնած մարդիկ, որոնք իրենց մերկությունը ծածկում էին լաթերի տակ: Եվ մենք տեսնում էինք, թե ինչպես մաուզերիստները նրանցից խլում էին հացի վերջին պատառը, ցորենի վերջին հատիկը, վերջին անասունը և բռնի քշում էին աշխատանքի:

Այսպես, մենք հասանք Ալեքսանդրապոլ (այժմյան Լենինական): Գիշեր էր, երբ մենք մոտեցանք քաղաքին: Քաղաքը թաղված էր մութի ու լռության մեջ: Եվ մենք արդեն այդ ժամանակ զգացինք, որ այստեղ, այդ խավարի ու լռության մեջ սպասվում են շատ կարևոր դեպքեր: Մենք քաղաքին էինք մոտենում երկաթգծով. և դեռ քաղաք չմըտած, լսեցինք գծերի վրա ծանր անիվների դղրդոցը: Խավարի միջից ծանրորեն հայտնվելով, մեր դեմ ելավ զրահագնացքը. լույսերը մարած էին, պողպատե աշտարակներից ցցված հրանոթների ու գնդացիրների փողերը ուղղված էին դեպի քաղաք: Աշտարակներից մեկի վրա, քամուն ընդառաջ, ծածանվում էր կարմիր դրոշը: Զրահագնացքը կանգ առավ մեզ մոտ, երկաթե բացված դռան միջից հայտնվեց բանակային կարմիր ժապավենավոր գլխարկ դրած մի մարդ:

— Ո՞վ եք դուք և ո՞ւր եք գնում,— հարցրեց նա մեզ:

— Մենք 1969 թվականից ենք: Մենք եկել ենք ձեր ժամանակները, որպեսզի մեր պիոներներին պատմենք ձեր օրերի մասին,— ասացինք մենք:

— Հա՞, դուք գալիքի պիոներնե՞րն եք,— ասաց նա:

— Այո՛,— ասացինք մենք:

— Դե որ այդպես է, եկեք մեզ մոտ և ամեն ինչ ինքներդ տեսեք,— ասաց նա:— Սա «Վարդան զորավար» զրահագնացքն է, ես Կարմիր գվարդիայի հրամանատար Եգոր Սևյանն եմ:

Մենք բարձրացանք զրահագնացք: Շոգեքարշը փնչաց, և գըծերի վրա դղրդալով զրահագնացքը շարժվեց դեպի կայարան: Մենք ծանոթացանք զրահագընացքի հրամանատար Սարգիս Մուսայելյանի հետ: Զինվորական սպայի համազգեստով, արծվի հայացքով, խրոխտ ու ձիգ կեցվածքով, մի կողքին ուսափոկից կախված մաուզեր, իսկ մյուս կողքին ատրճանակ կապած այդ մարդը մեզ իսկույն դուր եկավ: Իմանալով, թե ովքեր ենք մենք և մեր գալու նպատակը, նա շատ ուրախացավ:

— Դուք անցել եք ամբողջ Հայաստանով,— ասաց նա:— Դուք տեսել եք, թե ինչպիսի թըշվառ ու օրհասական վիճակի է հասցված այսօր հայ ժողովուրդը: Մենք նույնպես տեսնում էինք այդ, մենք հասկանում էինք, որ ևս մի քանի ամիս, և մեր ամբողջ ժողովուրդը կկանգներ խսպառ բնաջնջման շեմքին: Եվ մենք չըհամբերեցինք, մենք ապստամբեցինք, դուք տեսաք ապստամբության կարմիր դրոշը մեր զրահագնացքի վրա: Այժմ մենք գնում ենք քաղաքի վրա, այնտեղ դեռ տիրում են դաշնակ-մաուզերիստները, այնտեղ դեռ նրանց իշխանությունն է: Վաղը մենք կտապալենք նրանց իշխանությունը և

կհաստատենք բանվորների ու գյուղացիների իշխանություն, վաղը Հայաստանի բոլոր վայրերում մարդիկ կելնեն ապատագրական պայքարի:

Առավոտ էր, երբ մենք մտանք կայարան: Կայարանը դատարկ էր, դաշնակները փախել էին կայարանից: Դեռ լույսը չբացված, կրահագնացքում հավաքվեցին Ալեքսանդրապոլի բոլշևիկների և ապստամբության ղեկավարները՝ Բագրատ Ղարիբջանյանը, Ավիս Նուրիջանյանը, Սարգիս Մուսայելյանը, Եգոր Սևյանը, Արշակ Գոգունցը և մյուսները, որոնք վճռեցին Հայաստանում հռչակել սովետական իշխանություն: Առավոտյան, արթնացող քաղաքի վրա տարածվեց բոլշևիկների կոչը.

«Պրոլետարիատի, չքավոր գյուղացիության և կարմիր կորքերի կամքով, Հայաստանի Կոմունիստական կուսակցությունը, Ռազմա-հեղափոխական կոմիտեն Հայաստանի հանրապետության մեջ հռչակում են սովետական իշխանություն»:

Եվ կայարան էին լցվում պինվորների, բանվորների խմբերը. նրանք գալիս էին բոլշևիկների մոտ՝ հավաստիացնելու նրանց, որ պատրաստ են կանգնելու նրանց դրոշի տակ և կռվելու հանուն նոր իշխանության, մինչև արյան վերջին կաթիլը: Կեսօրին կայարանին մոտեցան պինված դաշնակ հեծյալները: «Մենք պահանջում ենք հանձնել կրահագնացքը և ներկայանալ դաշնակցական իշխանություններին»,— հայտնեցին նրանք Սարգիս Մուսայելյանին:

«Մենք մինչև վերջ կկռվենք»,— պատասխանեց Մուսայելյանը, և կրահագնացքի գնդացիրները ուղղեցին նրանց կողմը: Դաշնակները շուռ տվեցին ձիերի գլուխները և կայարանից փախան: Կայարանից, Սևերսկի կոչվող կորանոցներից և քաղաքի տարբեր կողմերից կարմիրգվարդիականների ու ապստամբ պինվորների խմբերը մտան քաղաք: Մենք գնում էինք նրանց հետ և նրանց հետ մենք գրոհեցինք Կապաչի պոստը: Այստեղ մեր դեմ ելան խմբապետ Հաջիի պինված բանդաները: Նրանք գալիս էին մեր դեմ, իրենց առջևում որպես պատնեշ երեխաներ շարած, որպեսզի մենք չկարողանանք կրակել: Բայց մենք գրոհեցինք Կապաչի պոստը, և այստեղ մեր ընկերներից շատերը կոհվեցին: Մենք քաղաքից դուրս քշեցինք դաշնակ մաուզերիստներին, և իշխանությունը անցավ բոլշևիկների ձեռքը: Դա 1920 թվականի մայիսի տասն էր: Հետևյալ օրը մենք լուր ստացանք, որ ապստամբություններ են բռնկվել Հայաստանի նաև շատ այլ վայրերում՝ Երևանում, Կարսում, Քավթառլուում, Կաղզվանում, Սարիղամիշում, Նոր Բայազետում, Զանգեզուրում և այլուր:



— Ես,— շարունակեց պատմությունը Զոհրակը,— այդ օրը ճանապարհի ընկա և երեկոյան հասա Կարս: Իր անառիկ բերդով հռչակված այս հինավուրց քաղաքում ապստամբությունը ղեկավարում էր Հայաստանի առաջին կոմերիտական կազմակերպության ղեկավար Ղուկաս Ղուկասյանը: Ապստամբները գրավեցին փոստհեռագրատունը, կայարանը, բանկը և բոլոր պետական հիմնարկները: Կարսի բերդի վրա ծածանվում էր հեղափոխության կարմիր դրոշը: Ղուկաս Ղուկասյանին ես տեսա ապստամբ պինվորներով շրջապատված, իր մարտական ընկերների գլուխն անցած, քաղաք մտնելիս: Նա քայլում էր՝ հրացանը ուսին, խրոխտ, աներկյուղ:

Երբ Կարսում լուր ստացվեց, որ Ալեքսանդրապոլում գործերը վատ են, դաշնակների հակահեղափոխական ուժերը գործի անցան: Բացի դրանից, հայտնի եղավ, որ անհնար է Սարիղամիշից կրահագնացք ուղարկել Կարս, ապստամբներին օգնելու. դաշնակները քանդել էին երկաթգիծը: «Չպետք է հապաղել, պետք է հարձակման անցնել»,— ասում էին դաշնակները: Եվ անցան: Իրենց շուրջը համախմբելով թշնամական տարրերին՝ մաուզերիստական ուժերին, նրանք շրջապա-



տեցին ապստամբներին, կտրեցին քաղաքից դուրս տանող բոլոր ճանապարհները: Ապստամբների դրությունը ծանրացավ: Նրանց նահանջող վերջին խմբերը պատըսպարվեցին «Բուկինչև» ամրոցում: Մայիսի 12-ի ամբողջ օրը համառ մարտերից հետո ապստամբների վերջին խումբը Ղուկաս Ղուկասյանի գլխավորությամբ գիշերը ճեղքեց դաշնակների շղթան և մարտերով սկսեց նահանջել Ալեքսանդրապոլի ուղղությամբ:

Ապստամբած Ալեքսանդրապոլը չկարողացավ մինչև վերջ դիմանալ դաշնակների հարձակումներին և ընկավ: Սեպուհի կորամասերը մտան քաղաք և սկսվեց ապստամբած զինվորների ու բանվորների մասսայական կոտորած:

— Իսկ ի՞նչ եղան Կարսից Ալեքսանդրապոլ նահանջող ապըստամբները,— հարցրեցինք մենք:

— Նրանք 28 հոգի էին,— պատմեց Զոհրակը:— Մայրա գյուղի մոտ մարտի բռնվելով ոչընչացրին գյուղի քահանայի հավաքած դաշնակցական խումբը և շարունակեցին ճանապարհը: Ալեքսանդրապոլից ընդամենը 18 կիլոմետրի վրա, Արգինայի ձորում նրանց հետևից ավտոներով հասան դաշնակցական խմբապետներ Մացակի, Մուրադխանի և Զեյմխանի 70 մաուզերիստները: Այստեղ, Արգինայի ձորում սկսվում է մայիսյան ապստամբության հերոսամարտերից մեկը, որտեղ մինչև արյան վերջին կաթիլը, մինչև վերջին փամփուշտը մարտընչելով ընկան շատերը:

— Իսկ Ղուկաս Ղուկասյա՞նը,— հարցրինք մենք:

— Վիրավոր, արյունաքամվելով, նա ջրաղացի միջից կրակում էր թշնամու վրա: Ուժասպառվելով, նա ընկավ գետնին, և ներս խուժած 8—10 մաուզերիստները նըրան տեղնուտեղը գնդակահարեցին: Ղուկասը այդ ժամանակ դեռ 21 տարեկան էր:

— Հետո մենք լուր ստացանք,— շարունակեց պատմել Արտակը,— որ ապստամբության մյուս օջախները նույնպես ճընշված են: Հազարավոր ապստամբներ ենթարկվեցին սպիտակ տեռորի, հազարավորները նետվեցին բանտերը: Ահա այստեղ էր, որ մեզ էլ, մի խումբ ապստամբների հետ, տարան Ալեքսանդրապոլի բանտը: Այստեղ դաշնակների ձեռքով գնդակահարվեցին Վանյանը, Եգոր Սևյանը, Պրիբիլսկին և մըյուսները... Ապա մեզ տեղափոխեցին Երևանի բանտը, և այստեղ մենք իմացանք, որ մեր հարևան խցում ընկերների հետ բանտարկված են Հայաստանի բոլշևիկների ղեկավար Ստյոպա Ալավերդյանը, Բագրատ Ղարիբջանյանը և Սարգիս Մուսայելյանը: Մի քանի անգամ դաշնակ մաուզերիստները փորձեցին նրանց խաբելով դուրս տանել խցից և հաշվեհարդար տեսնել: Սակայն բանտարկյալները փակեցին խցերի երկաթյա դռները և հրաժարվում էին նրանց հանձնվել: Դաշնակները բանտը շրջապատեցին զինվորներով և սկսեցին ջարդել խցերի դռները և մաուզերների փողերը ուղղեցին բոլշևիկների վրա. այդ ժամանակ Ստյոպա Ալավերդյանը վերցնելով բանալին, շպրտեց դաշնակների երեսին. «Եթե ինձ վիճակված է գնդակահարվել, ինչո՞ւ պիտի կռվեն ընկերներս»,— ասաց նա: Նույնը ասացին նաև Բ. Ղարիբջանյանը և Ս. Մուսայելյանը: Երբ նրանց տանում էին, ամբողջ բանտը երգում էր «Ինտերնացիոնալ»: Նրանց հոշոտեցին Նորքի ձորում:

Հավանաբար մեզ էլ նույն ճակատագիրը կվիճակվեր: Բայց մի առավոտ մենք արթնացանք հեռավոր կրակոցների ձայնից: Բանտի միջանցքում լռություն էր: Դաշնակները չքվել էին: Կեսօրին մոտ խցերի դռները բացեցին, և մենք գրկախառնվեցինք մեր ազատարարների հետ: Հայաստանում հաստատվել էր սովետական իշխանություն:



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

— Եվ ինչն է մեզ այս վերջին ճանապարհորդության ընթացքում ամենից շատ զարմացնում,— ասաց Զոհրակը,— թե ընդամենը քառասունինը տարի առաջ ինչպիսի թշվառ, օրհասական վիճակի մեջ էր հայ ժողովուրդը, և, թե ընդամենը այդ քառասունինը տարիների ընթացքում ինչպիսի անհավատալի, մեծագույն փոփոխություններ են կատարվել նրա կյանքում:

— Բայց այդ մասին մենք կըպատմենք մի ուրիշ անգամ,— ասաց Արտակը, և նրանք մեզ հրաժեշտ տվին:

*ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ*

# ՎԱՐԴԱԳՈՒՅՆ ԱՅԳԻ

*ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Տղան մոտեցավ ավազանին։ Շատրվանները բխում էին այնքան առատորեն, որ նա իր դեմքին զգաց կաթիլների սառնությունը։ Երաժշտությունը գնալով ուժեղանում էր։ Ավազանի մեջ տերևներ էին լողում, պաղպաղակի թղթեր։ Տղան կռացավ ու մատը դրեց ջրի մեջ։ Ծնծղաները շառաչեցին, ծղոտաց շեփորը, չորս կողմը համակվեց թնդյունով ու հանդիսավորությամբ, և մի պահ նրան թվաց, թե քայլերգի հնչյունները հորդում են շատրվանից։

— Բարև՛,— լսեց նա ինչ-որ մեկի ձայնը։

Շուռ եկավ ու նկատեց մի փոքրիկ աղջկա։ Դեղին խոպոպիկները թափվել էին հոնքերին, ծնկները ավազոտ էին ու քերծված։

— Ի՞նչ ես ուզում,— հարցրեց տղան։

Նվագախումբը մի պահ դադարեց, միայնակ դղրդացին թմբուկները, երաժշտությունը վերսկսվեց ավելի սաստկությամբ, և աղջիկը զարմացավ։ Մի քիչ կանգնեց, ապա շուռ եկավ, որ գնա։

— Լսի՛ր,— կանչեց նրա հետևից տղան։

Աղջիկը ետ դարձավ։

— Ինչո՞ւ ես գնում։

Լռություն։

«Տարօրինակ աղջիկ է,— մտածեց տղան,— մի՞թե ես նրան որևէ վատ բան ասացի»։ Նա քայլեց աղջկա կողմը՝ աշխատելով ժպտալ։

— Բարև,— ասաց տղան։

Աղջիկը կարծես դրան էր սպասում։

— Ես Անուշն եմ,— ժպտաց նա,— մենք ապրում ենք այգու կողքին։

— Իմ անունը Կարո է,— ասաց տղան,— մեր տունը հեռու է այստեղից։

Երաժշտությունը նորից սկսվեց։ Այս անգամ վալս էին նվագում։ Այգու հեռավոր անկյունում պտտվում էր կարուսելը։ Ջրացայտերն արդեն չէին հասնում նրանց։

— Դու ինձանից մե՞ծ ես,— հարցրեց Անուշը։

— Այո՛,— պատասխանեց տղան,— շա՛տ։

— Շա՞տ,— Անուշը զարմացավ։— Քանի՞ տարեկան ես։

— Տասնմեկ։ Իսկ դու երևի վեց էլ չկաս։

— Վեց ու կես,— ուղղեց աղջիկը։

— Թող այդպես լինի,— ձեռքը թափ տվեց տղան։

Վալսը վերջացավ։ Կարուսելի պտույտը դադարեց։

— Ես շքերթում էի,— ասաց տղան։

Աղջկա աչքերը փայլեցին հիացմունքից։

— Ես միշտ դուրս եմ գալիս մայիսմեկյան շքերթի։ Ադիբուդի եմ առնում, օդապարիկներ։ Կանաչ, կապույտ ու վարդագույն։ Միշտ։ Կանաչ, կապույտ ու վարդագույն։

— Ինչո՞ւ,— հարցրեց Անուշը։

— Դրանք իմ գույներն են,— բացատրեց տղան։

— Իսկ ո՞վ է դրանք քեզ տվել։

— Նա։ Ես ինձ եմ տվել կապույտը, կանաչն ու վարդագույնը։ Ես ասել եմ. «Կարո, այս գույները պիտի պատկանեն քեզ, և ուրիշ ոչ մեկին։ Դու անհասարակ ինչ-որ բան պիտի ունենաս։ Գույներ, փողոց, սիրած թիվ, անուն»։

— Ինչո՞ւ։

— Հենց այնպես։ Առանց դրա հնարավոր չէ։

— Իսկ ո՞ւր են օդապարիկները։

— Ահա՛,— տղան ձեռքը գրպանը տարավ ու հանեց երեք ճմրթված փուչիկ։ Նվագախումբը նոր բան սկսեց նվագել։ Փուչիկները սմքած էին ու խեղճ։— Ես օդապարիկները չեմ փչում, որովհետև կարող են պայթել։ Իսկ եթե պայթեցին, նշանակում է տոնը վերջացավ։



Աղջիկը թեքվեց, որ ավելի լավ տեսնի փուչիկները։ Հետո մատը հպեց վարդագույնին։

— Սա լավն է,— ասաց նա։

— Ինչո՞ւ է լավ։

— Վարդագույն է, դրա համար։ Չէ՞ որ վարդագույն պաղպաղակ է լինում։ Իսկ պաղպաղակը իմ ամենասիրած բանն է։ Ամեն անգամ, Մայիսի մեկին, ես ու հայրիկը գալիս ենք այգի՝ տարվա մեջ առաջին անգամ պաղպաղակ ուտելու։ Եվ Մայիսի մեկը պաղպաղակի տոնն է։

— Ոչ,— ժպտաց տղան՝ զարմանալով աղջկա միամտության վրա,— Մայիսի մեկն օդապարիկների տոնն է։

— Թող այդպես լինի,— համաձայնվեց աղջիկը։

Երաժշտությունը շարունակվում էր։ Շատրվանից առատորեն բխում էր քայլերգը։ Գալարափողերից սա-

ոը կաթիլներ էին ցայտում, բայց չէին ողողում նրանց:

— Հիմա ի՞նչ ենք անելու,— հարցրեց Անուշը:

— Չգիտեմ,— ուսերը թոթվեց Կարոն,— մի ժամանակ ես փորում էի: Մամաս ասել էր, որ եթե Երկիրը ծակենք, ծակենք, ապա կարող ենք դուրս գալ հակառակ կողմը, որտեղ էլի մարդիկ կան: Միայն թե նրանք գլխիվայր են քայլում:

— Գլխիվա՞յր:

— Այո՛: Այդպես էր ասում: Ես էլ փորում էի:

— Եվ ծակեցի՞ր:

— Ո՛չ, հնարավոր չէ:

— Ուրեմն մամադ խաբե՞լ էր:

— Ո՞վ է հասկանում: Ե՛վ այո, և՛ ոչ: Իսկ հետո, մեր բակում մի կոշկակար էր ապրում: Պարոն Ղևոնդը: Սովորաբար կոշկակարներին անվանում են վարպետ, բայց այս մեկը պարոն էր: Երևի այն պատճառով, որ լավ էր կարում: Ես տեղավորվում էի նրա կողքին, եռոտանու վրա, որի նստատեղը խաչաձև հյուսված կաշեփոկերից էր: Ժոլին վազվզում [illegible],



Նկ. ՅՈՒՐԻ ԲԱԲԱՅԱՆԻ

դա մեր շունն էր: Պարոն Ղևոնդը կեռ մատներով բարալիկ մեխեր էր վերցնում մոմպասի տուփից ու լցնում բերանը: Գլխիկները պսպղում էին շրթունքների արանքից: Ժոլին հալածում էր շնաճանճերին: Պարոն Ղևոնդը բթամատով ու ցուցամատով բռնում էր մեխը և հարվածում մուրճի հակառակ կողմով: Թրը՛խկ: Մեխն անհետանում էր կոշիկի կրունկի մեջ: Թրը՛խկ՝ հաջորդ մեխը: Ժոլին ցատկում էր շնաճանճին որսալու համար: Հա՛ֆ: Հետո էլի՝ թրը՛խկ: Մեխերն անհետանում էին աներևակայելի արագությամբ: Թը՛խկ, թրը՛խկ, հա՛ֆ: Թթենու ստվերում զով էր, խեղդոց...

— Հետո՞:

— Հետո ոչինչ: Այսքանը:

— Իսկ ի՞նչ եղավ պարոն Ղևոնդը:

— Գնա՛ց: Մահացավ:

— Ափսո՛ս: Մի անգամ ես մահացած ճնճղուկ տեսա:

Կարոն գնաց ու հենվեց կաղամախուն: Իրենց բակի թթենին մեծ էր ու խոժոռադեմ: Բայց իրենց բակում նվագախումբ չկար: Ավազան էլ: Ճիշտ է, անձրևից հետո ջրափոսեր էին գոյանում, բայց ավազանն ուրիշ է: Հետո՝ Անուշը: Նրա հետ կարելի է զրուցել, թեև աղջիկ է:

— Վաղուց, շա՛տ վաղուց, երբ դու նոր էիր ծընվել,— սկսեց տղան:

— Տատիկս էլ է այդպես պատմությունն սկսում:

— Հա՛... Նա մե՞ծ է:

— Երևի վաթսուն տարեկան:

— Ես տասնմեկ եմ: Ուրեմն վաղուց, շա՛տ վաղուց, երբ դու նոր էիր ծնվել, մեր փողոցը մի սայլ էր գալիս, նավթի տակառով: Սայլապանը շեկ մարդ էր և թաղում նրան բոլորը գիտեին: «Մարկոսն եկավ,— ասում էին,— Ալվարդի հետ»: Ալվարդն էլ ձին էր: Եվ ամբողջ փողոցը լցվում էր աղմուկով: Մարդիկ շտապում էին նավթ գնելու և տեսնելու Մարկոսին: Երբեմն նա հարբած էր լինում: Իսկ Ալվարդը կարմիր էր, նիհար, ամենևին նման չէր տիրոջը: Ես խցկվում էի բազմության մեջ, Մարկոսին մոտ կանգնելու համար: Նա շատ բարձրաձայն էր խոսում, ծնծղայի պես: «Հո՛, հո՛,— ասում էր նա,— նավթ չէ, այլ՝ մեռոն»: Մի խոսքով, առնում էի նավթն ու գալիս տուն: Ճանապարհին դիտավորյալ մի քիչ թափում էի, որ երբ անձրև գար, գետնին գունավոր հետքեր լինեին: Կանաչ, կապույտ, վարդագույն:

— Պաղպաղակի պես՝ վարդագույն:

— Գնանք ուտենք,— առաջարկեց տղան,— փող կա, քառասուն կոպեկ: Իսկ տուն ոտքով էլ կարող եմ գնալ:

Եվ չսպասելով Անուշի պատասխանին՝ բռնեց նրա ձեռքն ու տարավ: Նրանք քայլում էին նվագախմբի երաժշտության ուղեկցությամբ: Անուշի ձեռքը փոքրիկ էր, ավազոտ: Հասան տաղավար: Քայլերգի աղմուկը խլացել էր, հազիվ էր լսվում: Տղան հարյուրական գրամ պլոմբիր գնեց ու տարավ սեղանի մոտ:

— Կե՛ր,— ասաց նա Անուշին:

Անուշը ժպտաց ու սկսեց գդալով խառնել վարդագույն գնդիկները: Տղան սպասում էր, թե երբ է նա ըսկըսելու ուտել: Նա նայում էր աղջկա խոպոպիկներին, որոնք թափվել էին ճակատին ու խանգարում էին: Խոպոպիկները վարդագույն էին: Տաղավարի առաստաղը նույնպես, տղայի գրպանում երեք փուչիկներն էլ վարդագունել էին և աղջիկն իր գդալով խառնում էր այդ ամենը: Վերջապես նա սկսեց ուտել: Ամեն ինչ իր նախկին գույնն ստացավ:

— Մայիսի մեկը ո՛չ պաղպաղակի տոնն է, ո՛չ էլ օդապարիկների,— ասաց տղան,— Մայիսի մեկին տոնում են վարդագույնը:




*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

Մենք սովորում էինք յոթերորդ «ա» դասարանում:

Ես, Վարուժանն ու Համոն:

Երեք անբաժան ընկերներ:

Վարուժանը բարձրահասակ էր, Համոն կարճլիկ էր, ես՝ երկուսի միջին տեղը:

Ապրում էինք միևնույն տան հինգերորդ հարկում, միասին էինք դպրոց գնում, միասին էինք տուն գալիս, դասերը միասին էինք պատրաստում:

Մեր ծնողները շատ էին ուրախանում մեր համերաշխ ընկերության վրա:

Բայց Համոն ծանոթացավ ինչ-որ թուղթ խաղացող տղերքի հետ և բնավորությունը փոխեց: Նա ըսկըսեց Վարուժանին համարյա ամեն օր ծեծել և խլել նրա տետրակները, մատիտները, գրչակոթերը: Իսկ ես... Ես ո՛չ Համոյին էի քաջալերում, ո՛չ էլ Վարուժանին պաշտպանում: «Իմ ի՞նչ գործն է»,— ասում էի մտքումս:

*

*   *

Այն տարի Վարուժանը իր ծննդյան օրը ծնողներից նվեր ստացավ ձեռքի սիրուն մի ժամացույց: Մենք երեքովս առանձնացանք բակում ծաղկած բալենու տակ Վարուժանի ժամացույցը տեսնելու: Համոն ժամացույցն առավ և սուսուփուս դրեց գրպանը:

— Յա՞,— ասաց Վարուժանը:

— Բա՛,— պատասխանեց Համոն:— Հերդ քեզ է նվիրել, դու էլ՝ ինձ:

— Հանա՞ք ես անում:

— Հանաք չեմ անում:

— Բա ես տանն ի՞նչ ասեմ:

— Ասա՝ կորցրել եմ,— հրամայեց Համոն:— Անպետքի՛ մեկը, մի քոսոտ սո՛ւտ էլ չես կարող ասել:

— Ինչո՞ւ սուտ ասեմ,— լացախառն գոռաց Վարուժանը:— Տո՛ւր իմ ժամացույցը:

— Իսկ եթե գնաս տուն և ինձ մատնես,— Համոն իր գնդլիկ բռունցքը մոտեցրեց Վարուժանի ծնոտին,— կդառնաս մատնիչ և գործ կունենաս, ա՛յ, սրա հետ:

Երկուսն էլ նայեցին ինձ՝ իմ դաշինքը որոնելու հայացքով: Ես չիմացա ո՛ւմ կողմը պահեմ... քրտինքը ճակատիցս իջավ լցվեց աչքերս: Ես առանց նրանց երեսին նայելու, ասացի.

— Վարուժանը չի՛ դառնա մատնիչ:

Վարուժանը ճարահատված հաշտվեց իր կորուստի հետ, և մենք մեր ընկերությունը շարունակեցինք: Մենք դրսում կերած վիրավորանքի մասին տանը գանգատվելը համարում էինք փոքրոգություն:

Մյուս օրը աստիճանների գլխին Վարուժանի մայրըն ինձ հարցրեց.

— Բագրատի՛կ, ո՞ւր է Վարուժանի ժամացույցը:

— Ես չասացի՞, որ մի խուժան տղա թռցրեց ու փախավ,— իմ փոխարեն պատասխանեց Վարուժանը:

— Ո՞վ էր, ո՞ւմ տղան էր:

— Ասացի չեմ ճանաչում,— սրտնեղեց Վարուժանը և ինձ գաղտնի աչքով արեց, որ չլինի հանկարծ նրա սուտը մերկացնեմ:

Ես Վարուժանի սուտը չմերկացրի:

Բակում, ավազանի մոտ, մեզ ամեն օրվա նման սպասում էր Համոն: Երեքովս միացանք ու քայլեցինք դեպի դպրոցը: Ճանապարհին Համոն շվացնում էր թուղթ խաղացող տղերքի երգը: Իսկ ես ու Վարուժանը լուռ էինք:

Չգիտեմ ինչ էր մտածում Վարուժանը, ես ինքս ինձ հետ կռիվ էի տալիս: Ես իմ մտքում ինձ համարում էի դավաճան, այսինքն՝ մի մարդ, որ չի պաշտպանում իր անմեղ ընկերոջը նրան վիրավորող և կողոպտող սրիկայի դեմ: Ես մի պահ խղճի սուր խայթոց էի զգում և հետո սկսում էի ինքս ինձ արդարացնել. ինչո՞ւ եմ դավաճան: Ես ի՞նչ կարող եմ անել: Վարուժանին պաշտպանեմ, Համոն կսկսի ինձ էլ հալածել: Ես ուրիշների դատավորը չեմ: Թող ամեն մարդ ինքն իրեն պաշտպանի:



*Նկ. ՎԱԶԳԵՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Ինձ մի բան շատ էր պարմացնում. Վարուժանը դպրոցի ուժաչափը Համոյից մեկ ու կես անգամ ավելի բարձր էր հուպ տալիս: Ասել է թե ուժեղ էր Համոյից: Ուրեմն ինչո՞ւ էր նրանից վախենում: Մի՞թե նրա համար, որ Վարուժանը խոսնվածքով բարի էր ու խաղաղ, իսկ Համոն՝ չար ու կռվարար: Թե՞ նրա համար, որ Համոյի հայրը գործարանի դիրեկտորն էր, Վարուժանի հայրը՝ արտադրամասի պետ և Համոյի հոր ենթական: Բայց իմ հայրն էլ էր արտադրամասի պետ, և Համոն ինձ երբեք չէր վիրավորում:

Մեր հայրերը մեր գործերին չէին խառնվում. իրար հետ լավ բարեկամներ էին և ամեն կիրակի իրար հրավիրում էին խաղի:

Նրանք մեզ համարում էին համերաշխ ընկերներ, օրինակելի տղերք: Նրանք չգիտեին, որ Համոն Վարուժանի կյանքը դարձրել է դժոխք և ես դրան նայում եմ անտարբեր: Մենք Համոյին չէինք մատնում ծնողների կամ դպրոցի դաստիարակին: Մենք մատնիչներ չէինք:

*

* *

Մոտենում էին ամռան արձակուրդները:

Այդ օրերին մեր տուն հյուր եկավ մի ամերիկահայ տուրիստ: Հորս հեռավոր ազգականն էր: Նա ինձ նվիրեց մի գեղեցիկ ինքնահոս գրիչ: Կոթը կանաչ էր, գլխակալը՝ ոսկեգույն: Ինքնահոս գրիչ ունենալ ես երազում էի վաղուց: Այնքան էի ուրախացել, որ գիշերը քնիցս արթնացա, ինքնահոսը գրպանից հանեցի և դրի բարձիս տակ: Առավոտյան նախաճաշի կեսից հրաժարվեցի, որ վայրկյան առաջ հանդիպեմ ընկերներիս և ցույց տամ իմ հարստությունը:



Մայրս աստիճանների գլխին ինձ պատմիրեց.

— Ինքնահոսդ լա՞վ կպահես: Փախցնել չտաս, ինչպես Վարուժանն՝ իր ժամա[illegible]

Բակում ինձ սպասում [illegible] Վարուժանն ու Համոն: Մենք ամեն օրվա ս[illegible] միացանք և շտապեցինք դըպրոց: Դասամիջոցին առանձնացանք մեր սիրած ընկուզենու տակ: Ծիծեռնակները երկինքը խաչկում էին և ուրախ ճռվողում: Ես այլևս չհամբերեցի. Պայուսակիցս հանեցի իմ ինքնահոսը և խաղացրի արևի տակ:



— Ամենալավ տեսակն է, գիտե՞ք:

Համոն գրիչն անմիջապես խլեց իմ ձեռքից.

— Այս ի՞նչ լավ գրիչ է: Եվ ի՞նչ ժամանակին ընկավ ձեռքս: Ես իմ ինքնահոսը թըղթախաղում տարվել եմ:

Եվ նա, հանգիստ, իմ գրիչը դրեց իր գրպանը:

Ես տագնապով հարցրի.

— Ի՞նչ ես անում...

— Տանն ասա՝ կորցրել եմ,— կարգադրեց Համոն:— Իսկ եթե ինձ մատնես, կդառնաս մատնիչ, և ես [illegible] քեզ կտանք արժանի պատիժ:

Համոն համերաշխության հայացքով նայեց Վարուժանին: Ես Վարուժանի օգնությանը դիմելու իրավունք չունեի: Գետինը պտտվում էր իմ շուրջը: Մալ մնաց ուշաթափվեի: Դուք պատկերացրեք, ես երկար այրվել էի ինքնահոս գրիչ ունենալու ցանկությամբ, վերջապես արժանացել էի ամենալավին, և այդ ավաղ Համոն խլում էր իմ երազանքի լավագույն մարմնացումը: Վիրավորանքն ու ցավը խեղդում էին ինձ:

Համոն հարցը արդեն լուծված էր համարում և սկսեց շվացնել թուղթ խաղացող տղերքի երգը: Եվ այն ժամանակ տեղի ունեցավ հրաշք: Հանկարծ Վարուժանը մի նոր ձայնով, որ մինչև այդ մենք չէինք լսել նրանից, մի տարօրինակ եղանակով ասաց.

— Լսիր... թղո՛ւկ, ինքնահոսը վերադարձրո՛ւ:

— Ինչի՞ ինչ,— սպառնական կարմանքով բացականչեց Համոն:— Դու այդ ո՞ւմն ես հրամայում:

— Թոկից փախած ավազակին,— Վարուժանի մեծ-մեծ, երազուն աչքերի մեջ կարծես կայծակ շողաց, և նա իր ջղուտ ձեռքով բռնեց Համոյի օձիքը:— Ինքնահոսը տիրոջը վերադարձրո՛ւ:

Համոն գրպանից հանեց իմ ինքնահոսը.

— Ա՛ռ: Հանաք էի անում:

— Հեռացի՛ր,— հրամայեց Վարուժանը:— Եվ սրանից հետո մեզ հետ ո՛չ հանաքներ կանես, ո՛չ ընկերություն:

Համոն լուռումունջ հեռացավ:

Նրա թմբլիկ թիկունքն ասես այրվում էր Վարուժանի կրակոտ հայացքի տակ:

Այս էր այն դեպքը, որ ես ուզում էի ձեզ պատմել:

Դրանից հետո ի՞նչ եղավ,— գուցե հարցնեք դուք:

Դրանից հետո ես ամաչում էի նայել Վարուժանի երեսին: Ես նրան պարտք էի մնացել, այնպիսի պարտք, որ չես կարող հատուցել ոչ մի թանկարժեք նվերով: Ես երազում էի, որ Վարուժանն ընկնի մի ծանր վիճակի մեջ և ես կյանքս վտանգի տակ դնելով նրան օգնեմ: Վարուժանը դպրոցն ավարտեց ոսկե մեդալով և ընդունվեց համալսարան, և ես մինչև այսօր էլ շարունակում եմ մտածել, թե ինչպես հատուցեմ նրան իմ պարտքը:




ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

Առուն մթին սարից գալիս,
Ամեն քարի գլուխ տալիս,
Ամեն քարի գլուխ դնում
Ու գնում է, գնու՜մ, գնու՜մ.
Մեջքին՝ փրփուր, փորին՝ ավազ,
Մեկ՝ վազեվազ,
Մեկ՝ նազենազ,
Մեկ՝ չորեքթաթ, մեկ՝ չոքեչոք,
Մեկ՝ թռչելով ազատ, անհոգ.
Մեկ՝ ընկնում է, ելնում կրկին,
Անեծք թափում քարի գլխին,
Մեկ՝ հրճվում է, ուրախանում,
Օրհնում աշխարհ ստեղծողին...
Ու գնում է, գնու՜մ, գնու՜մ—
Աչքը՝ մովին,
Ուշքը, ծովին:

# ՀՈՐԱՏՈՂՆԵՐԸ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

*Երբ մենք բեռնատարով շուռ եկանք վերջին բլուրը, իմ առջև մի զարմանալի տեսարան բացվեց: Մարդիկ իրար էին խառնել լեռներն ու կիրճերը, դալար կանաչն ու դարերով անշարժ ժայռերը: Գետի դիմացի ափին գորշ արտահագուստով մարդիկ հսկա սարը հարթեցրել էին ու ամբարտակ էին կառուցում: Ներքևում, ժայռերի մեջ փորում էին ջրամբարի կարգավորիչները: Իսկ աջ ափին թունելախորշը գետաձիու պես բացել էր ահռելի բերանն ու հզոր պոմպերով արտաշնչում էր գաղջ օդ, ջուր, ցեխ: Թույլ առկայծող էլեկտրական լույսերը բազմակետերի պես խավարի միջով ձգվում էին հեռու՜, հեռու՜...*

*— Ճանապա՜րհ,— հանկարծ լսվեց աղջկա մի զրնգուն ձայն: Թունելախորշից դուրս խուժեց վագոնաշարը ու դղրդոցով սուրաց դեպի կիրճը: Կիրճի եզրին վագոնավարը՝ մի ռուս աղջիկ, արգելակեց մեքենան ու բեռը թափեց ձորը: Վագոններից դուրս թռչող մուգ կանաչ քարերը մի պահ ցոլցլում էին արևի տակ ու անհետանում ձորում: Ես հասկանում էի այդ քարերին: Նրանք հազարավոր տարի լեռան մեջ խավարի մասն էին կազմում: Ու հիմա արևի առաջին շողերից կկոցում էին թարթիչները:*

*Ռուբենը՝ անվտանգության տեխնիկայի ինժեները, ինձ հանդերձարան տարավ: Նա օգնեց, որ ես հագնեմ հորատանցողի կոշտ արտահագուստը, գլխիս պլաստմասսայե սաղավարտ դրեց ու առաջ ընկավ: Շուտով խավարը կուլ տվեց մեզ: Դրսի լույսը այլևս չէր երևում: Մենք քայլում էինք բետոնե պատերի միջով, և եթե օդամուղ խողովակները չլինեին, կարելի էր կարծել, որ մանկական երկաթուղու թունելում ենք: Միայն թե մենք այստեղ ժամանակավոր զբոսնողներ ենք: Շուտով, շատ շուտով այս նույն պատերը բերնե-բերան կլցվեն Արփայի ջրերով ու ինչ-որ տեղ կդառնան միրգ, լույս, գեղեցկություն:*



*— Ի՞նչ ես կարծում, Ռուբեն,— հարցրեցի ես,— թունելը ժամանակին կավարտվի՞:*

— Չգիտեմ,— մտածկոտ կանգ առավ Ռուբենը,— դժվարանում եմ ասել։ Երևի չէ, բայց ոչ թե այն պատճառով, որ բանվորները լավ չեն աշխատում։ Տեղանքը անհավոր բարդ է. գիտե՞ս ինչ է նշանակում 10-12 կատեգորիայի ապառ։ Դեռ այստեղ լավ է, չոր է։ Առաջ ես աշխատում էի Կարմրաշենում, որտեղ ամբողջ ժամանակ թունելախորշը ջրով էր լցվում։

— Դժվար է չէ՞ այդպիսի պայմաններում աշխատելը, ինչ եմ ասում, երևի շատ դժվար է։

— Նայած ում համար,— ժպտաց Ռուբենը,— ի՞նչն է դժվար, երբ աշխատանքը հարյուր տոկոսով մեքենայացված է։ Եվ հետո՝ նպատակը... Ես գյուղում մի պապ ունեմ, ամեն անգամ ինձ տեսնելիս ասում է՝ Ռուբեն բալա ջան, ինձ տար ձեր թունելը, մի ամիս ձրի աշխատեմ, Սևանին պարտքս տամ։



Առաստաղից կախված լուսե բազմակետերը ավարտվեցին։ Թունելը միանգամից լցվեց սպիտակավուն փոշով։ Կոմպրեսորների դղրդը ուժեղացավ ու շուտով անտանելի դարձավ։ Սպիտակ փոշու ֆոնի վրա սև բծերի պես շարժվում էին հորատանցողների ստվերները։ Այնպիսի անհավոր աղմուկ էր, որ մարդ ուզում էր պոկել, դեն շպրտել ականջները։ Մենք խարխափելով մի երկու քայլ էլ արեցինք ու դեմ առանք հրսկա ժայռաբեկորին։ Դա սև, միատարր ապառ էր, սպիտակ ու կապույտ բծերով։ Գեղեցիկ էր, եթե մտածելու լինեինք, որ գտնվում է 2600 մետր լեռան ընդերքում, երկրի կեղևից 3 հազար մետր ցած։ Բայց ժայռաբեկորը իր գեղեցկության մեջ դաժան էր, որովհետև կարծր համառությամբ փակել էր մարդու ճանփան։ Հենց կողքիս ջրի ու քրտինքի մեջ ողողված աշխատում էր մի գեր հորատանցող։ Նա 25 կիլոգրամանոց ծակիչը փորին հենած, ամբողջ ուժով սեղմում էր լեռան կրծքին։ Այնպիսի հուսահատ կրճտոց էր լսվում, որ ես չգիտեի ո՞վ է տնքում, ծակի՞չը, թե՞ հորատանցողի մարմինը։ Ոչ, հորատանցողները հանգիստ էին։ Նրանց դեմքը պրկված էր, բայց աչքերով անտարբեր համառությամբ նայում էին





ապառի կարծր սևությանը։ Այդ հայացքները ավելի համառ էին, քան կարծր, անզգա ժայռաբեկորը։

Հորատանցողներից մեկը նայեց ինձ ու փոշու մեջ փայլեցրեց իր սպիտակ ատամները։ Ես երևի շփոթված, ապշած տեսք ունեի։ Իսկ նրա ժպիտը ասում էր.

— Ի՞նչ ես զարմացել։ Սա մեզ համար ի՞նչ է որ՝ հե՛չ։

Հերթափոխի պետը բարձրացրեց ձեռքը։ Դժոխային հնդյունը մի ակնթարթում համրացավ։

— Պայթեցնե՛լ։

— Գնանք,— ինձ գլխով արեց Ռուբենը,— հիմա բանվորներն էլ կվառեն պատրույգը ու դուրս կգան։

Մենք հազիվ էինք 30 մետր հեռացել, երբ մի ահռելի դղրդոց կարծես տեղահան արեց ողջ թունելը։ Ինձ թվաց, թե մեր գլխին շուռ եկան երեք հազար մետրանոց լեռները։

— Կես մետր էլ առաջ անցանք,— թեթևացած շունչ քաշեց Ռուբենը,— այդ անիծված ժայռաբեկորը մեզ երկու օր գամել էր նույն տեղում։

Այդ պահին ես գլխի ընկա, որ Արփայից Սևան ձգվող տարածությունը կազմված էր ոչ թե կիլոմետրերից, այլ՝ մետրերից, սանտիմետրերից և անգամ միլիմետրերից։ Ես զգացի, որ Սևանի փրկությունը նախ և առաջ աշխատանքն է. համառ, տքնաջան ու հերոսական աշխատանքը։ Եվ ամենազարմանալին այն է, որ նրանք, ովքեր պիտի պարծենան այդ աշխատանքով, շատ սովորական մարդիկ էին ու ոչ մի արտասովոր բան չէին տեսնում իրենց արածի մեջ։

Լուսե աչքերը փայլեցնելով, օձի պես ներս սողաց վագոնաշարը։ Վագոններին նստած բանվորները ձեռքով արեցին մեզ ու անհետացան խավարում։

— Հերթափոխի են գնում,— ասաց Ռուբենը,— հիմա նախկին հերթափոխը դուրս կգա։

Մենք մի կողմ քաշվեցինք։ Քիչ անց լսվեց մի դղրդոց, ու վագոնաշարը կանգնեց մեր կողքին։ Մենք ներս մտանք։ Այստեղ-այնտեղ լուռ նստել էին հերթափոխից վերադարձող բանվորները։ Նրանք սև, հոգնած աչքեր ունեին։ Նրանց արտահագուստից ցեխախառն ջուր էր հոսում։ Ես նկատեցի դիմացս նստած հորատանցողի խոշոր ձեռքը, որ թույլ ցած էր կախվել ու ինքնիրեն դողում էր։

Երբ մենք դուրս եկանք թունելից, արդեն աղջամուղջ էր։

— Արի գնանք մի բան ուտենք,— ասաց Ռուբենը։

— Չէ,— ասացի ես,— ուշ է,— ցտեսություն։

Ես սեղմեցի նրա ձեռքը, իսկ մտքում՝ բոլոր այն ձեռքերը, որոնք դողում էին, որոնք դեռ դողալու էին։ Հետո շրջվեցի ու քանի որ գնալու տեղ չունեի, քայլեցի դեպի գետը։ Արփան խաղաղվել էր ու ավելի մտերմիկ դարձել։ Ես մի կողմ նստեցի ուսապայուսակս ու պառկեցի կանաչ խոտերի վրա։



Կանցնի քիչ, շատ քիչ ժամանակ, և այլևս չի լինի այս խոտը։ Չեն լինի ափի ծառերը, ժայռերը, գետի կատաղությունը վերջապես։ Այդ ամենը կսուզվեն հսկա ջրամբարի տակ, և Արփայի ջրերը հլու-հնազանդ թունել կմտնեն։ Արփան գետ էր և իհարկե, չէր կարող հասկանալ, որ դա մարդկանց քմահաճույքը չէ։ Ընդհակառակը, մարդիկ քավում էին իրենց մեղքը բնության հանդեպ։

Հետաքրքիր է, ի՞նչ կպատմեն մեր հետնորդները Արփա—Սևան ջրատարի մասին։ Անտարակույս այն ավելի երկար կապրի, քան մեզ հասած ամենահին կառույցը։ Շատ դարեր մարդիկ հնարավորություն կունենան հիանալու պատմական դարձած այս շինությամբ։

— Ի՞նչ ահռելի ուժի տեր են եղել մեր նախնիները,— երևի կբացականչի թունել եկած զբոսաշրջիկը,— ինչպե՞ս են ճեղքել այս լեռներն ու ապառաժները։

— Նրանք 30.000 մետր փորել են երկրի ընդերքը,— կավելացնի երկրորդը,— և ասում են աշխատել են գիշեր-ցերեկ, մինչև ավարտել են ջրատարը։

— Սխալ է այդ բոլորը միայն ուժի վերագրելը,— կհակաճառի երրորդը,— մի՛ մոռացեք, որ մեր նախնիները վեհ հոգիներ էին ու պաշտում էին գեղեցիկը։ Նրանք կառուցել են ջրատարը, որ միշտ ծփա Սևանը և մենք էլ հիանանք նրա կապույտով։

Երբ խումբը ծովափ իջնի, նրանցից յուրաքանչյուրը երևի մտքում յուրովի կպատկերի 20-րդ դարի երկրորդ կեսի շինարարին։

Ես շատ եմ ուզում, որ այդ մտապատկերը հնարավորին չափ մոտ լինի իրականությանը։ Որովհետև որքան էլ հեռու ճախրի նրանց երևակայությունը, ինչպիսի առասպելներ էլ ստեղծի, չի հասնի այն պարզությանն ու համառությանը, որով այսօրվա մարդը կառուցում է Արփա—Սևան ջրատարը։

## ՍԵՎ ՃՆԻԿԸ

**ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ**

Մի օր բակից մի շուն գտա,
Գիրկս առա ու տուն մտա։
Շատ լավիկն էր, ժիր էր տեղից,
Ինքն էլ կարծես ընտիր ցեղից։
Միայն գիտե՞ք ինչն էր վատը,
Սև էր մորթին, սև էր թաթը։
Բայց արի տես, որ տատը ծեր,
Սև գույներին սաստիկ դեմ էր։
— Դե լա՛վ.— ասի,— կեցցե ջուրը,
Կլողացնեմ, կանցնի մուրը։—
Իսկ տատս, թե.— Լսիր, Սամվել,
Էդ շունն ախր սև է ծնվել.
Այդպիսին է մորթին հագի,
Սև ծնվածը չի ճերմակի։

# ԸՆԿԵՐ ՍԵԴԱՆ ԵՎ ԳՐՔԻ ՓՈՔՐԻԿ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Դպրոց տանող ճանապարհով քայլում էր սպիտակ ժապավենով մի փոքրիկ աղջիկ: Նրա ձեռքին մի մեծ պայուսակ կար՝ գրքերով լի:

Ցանկացա ծանոթանալ փոքրիկի հետ ու հարցրի.

— Անունդ ի՞նչ է:

— Գոհարիկ:

Զրուցելով մենք հասանք դըպրոց: Գոհարիկն ինձ հրաժեշտ տվեց ու արագ-արագ բարձրացավ աստիճաններով:

Ես նույնպես մտա դպրոց: Գըտա գրադարանը: Գոհարիկն այնտեղ էր, գիրք էր ընտրում: Գըրադարանավարը նստել էր գրասեղանի մոտ և ուշադրությամբ լսում էր մի տղայի, որ ոգևորված պատմում էր իր կարդացած գրքի մասին: Երբ նա վերջացրեց, ընկեր Սեդան ուրախ ասաց.

— Ապրե՛ս, Հրահա՛տ, իսկ հիմա ընտրիր այս գրքերից մեկը:

Հրահատը փոքրիկ սեղանի վըրա դարսված գրքերն սկսեց ուշադրությամբ ուսումնասիրել:

Ընկեր Սեդայի հետ զրույցը երկար տևեց: Պարզվեց, որ դըպրոցը նոր է, ընդամենը մի քանի տարվա պատմություն ունի: Առաջ գյուղում կար ընդամենը մեկ դպրոց: Գրադարանն այն ժամանակ ավելի հարուստ էր: 6700 կտոր գիրք կար գրադարանում: 1965 թվականին կառուցվեց նոր դպրոց: Հո չէ՞ր կարելի բոլոր գրքերը բերել: Բայց նոր դպրոցի գրադարանն էլ պետք էր հարստացնել: Դպրոցականներն իրենց անձնական գրադարաններից 1-2 գիրք բերեցին, նվիրեցին նորաստեղծ գրադարանին: Հավաքածուի գըրքերից մեկը երեխաներն անվանում են «Նելլիի գիրքը»: Ջնայած Նելլին ավարտել է դպրոցը, բայց նրան դեռ հիշում են գըրադարանի լավագույն ընթերցողները: Իսկ լավ ընթերցողներ շատ ունի ընկեր Սեդան: Կարելի է թվարկել բոլոր դասարաններից, Նազիկը, Հրահատը, Ալբերտը, Կարենը, Սևիլը, Սվետլանան, Անահիտը, Գոհարիկը, Արարատը, Ֆրունզիկը...

Գրադարանում գործում է գըրադարանային խորհուրդը: Նըրանք հաճախ են քննարկում աշխատանքային պլաններ, երեկույթների, ցերեկույթների ծրագրեր: Խորհրդի անդամները փոքրերի համար անց են կացրել հեքիաթների երեկո: Կարդացել են «Անահիտը», «Արեգնազանը», «Գիքորը»... Ո՞րը թվել: Մի ուրիշ խումբ էլ է գործում գրադարանում: Դա գրքերի «երկարակեցության» մասին մտածողներն են, գիրք կազմողները: Նստում են նրանք դասերից հետո գրադարանում, ընտրում են մաշված ու կազմահան եղած գրքերը, վերցնում են սոսինձ ու սպիտակ թուղթ, ստվարաթուղթ, կազմում են հնամաշ գրքերը:



Այդ խմբում հատկապես աչքի են ընկնում Լիդան, Քնարիկը, Էմման, Ալինան, Լյուբան:

— Մի անգամ,— հիշեց ընկեր Սեդան,— «Քաոսից» մի թերթ էր պատռվել: Աղջիկներն իսկույն որոշեցին ձեռագրով արտագրել պակաս էջը և տեղադրել գրքում: Ինչու՞ իզուր գիրքը շարքից հանել: Այդպես էլ



արեցին: Այդ գիրքը հիմա էլ ընթերցողների ձեռքին է:

Այդ հոգատար աղջիկների ու տղաների շնորհիվ է, որ հիմա գրադարանն ունի 3200 կտորից ավելի գիրք:

Սակայն գրադարանային խորհըրդի անդամները և անձամբ ընկեր Սեդան դեռ գոհ չեն իրենց աշխատանքից, որովհետև պայմաններն այնքան էլ գոհացուցիչ չեն:

Ամենից առաջ գրադարանը տեղավորված է մի փոքրիկ սենյակում: Հարյուրավոր ընթերցողներ կան, սակայն ընթերցասրահ չկա: Գրադարանային կոլեկտորից ստացված գրքերը չեն համապատասխանում ծրագրային նյութերին: Հնարավորություն չկա գրադարանում մեծ ցուցահանդեսներ կազմակերպել...

Հոգսեր ունի Ալավերդու շըրջանի Ծնող գյուղի միջնակարգ դպրոցի գրադարանը: Բայց և ունի գրքի փոքրիկ շատ բարեկամներ, որոնք իրենց աշխատասիրությամբ, գրքի նկատմամբ ունեցած սիրով ու խնամքով թեթևացնում են այդ հոգսերը:

*Ա. ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*



# ԿԱՊՈՒՅՏ ԾԱՂԻԿԸ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Փոքրիկ տղան մայրիկի հետ
Դուրս է եկել զբոսանքի.
Զո՜վ է այնպես, բուրումնավետ,
Մեր մանկական զբոսայգին:

Մայրը գիրք է կարդում հանգիստ,
Ու խաղում է տղան անփույթ.
Մեկ էլ՝ մոտիկ թփի տակից,
Մի ծաղիկ է ժպտում կապույտ:

Վազ է տալիս տղան հանկարծ,
Տրորելով ծաղիկ ու խոտ
Ու կանգնում է նա հիացած՝
Կապուտաչյա այն ծաղկի մոտ:

Մտածում է տղան երկար
Ու չգիտի, թե ինչ անի.
Այդքան սիրուն ծաղիկ չկա՛,
Բա չպոկի՞ ու տուն տանի...

Բայց ծաղիկը զով զեփյուռից
Իր գլխիկն է մեղմ օրորում,
Ու ցողիկն է նրա աչքից
Արցունքի պես ցած գլորվում:

Ու հրաշքով ասես տղան
Հասկանում է լեզուն ծաղկի.
— Վա՜յ, վա՜յ, մեղք եմ,— ասում է նա,—
Բարի տղա, ինձ մի՛ պոկի...

Ո՛չ թե մեկին, այլ բոլորին
Պիտի ժպիտ ու բույր տամ ես.
Եթե պոկես ինձ իմ հողից,
Կթառամեմ անմիջապես...—

Ու խղճում է ծաղկին տղան,
Նորից վազում մայրիկի մոտ,
Ու ժպտում է հեռվից նրան
Կապույտ ծաղիկն անուշահոտ:



Ուսուցիչները հանդիմանում էին նրան. «Կապկություն մի՛ արա», հայրը բարկանում էր. «Ինձ հանգիստ թող, չե՞ս տեսնում, որ թերթ եմ կարդում»:

Մեծ եղբայրը խելքը տվել էր վեպերին, նրա՛ն բանի տեղ չէր դնում: Նա էլ առհասարակ չարություն էր անում, հատկապես երբ հյուրեր էին գալիս: Մայրը օձիք էր թափ տալիս և գանգատվում ծանոթ-հարևանի, թե՝ «կրակի կտոր է, մի տեղ հանգիստ նստել չգիտի»: Նա ուզում էր, որ ուրիշները իրենով զբաղվեն, իր վրա ուշադրություն դարձնեն և եթե նույնիսկ չհիանան ու գովեն, ապա գոնե անտարբեր չլինեն:

Ինքը գիտե, որ ուշադրության կենտրոն դառնալու համար, պետք է լինի կարգապահ և գերազանցիկ: Բայց դա դժվար է: Անկարգությամբ հերոս դառնալը ավելի հեշտ է: Իսկ պատժվելու դեպքում ինքն իրեն պահում է իսկական պարտիզանի պես: Ճիշտ է, դա նույնը չէ, բայց նման է, էլի՛: Իր արածներն անվանում են չա-րու-թյուն: Է՛հ, մեծերն իրենք շա՞տ են խելոք մնում. հեռու չգնանք, հենց եղբայրը: Հեծանիվ քշելիս տրամվայի հետ մրցության մեջ էր մտել և քիչ էր մնացել...հա, քիչ էր մնացել, ոչ թե անցնի տրամվայից առաջ, այլ ընկնի տակը: Նա պարծենալ կուզենա, ինքը չի՞ ուզենա: Ումի՞ց է պակաս. ի՞նչ անենք, որ բոյը կարճ է և իրեն «Մեծ Տիգրան» ասելու փոխարեն «Փոքր Տիգրան» են ասում:

Փոքր Տիգրանն իր «փոքր» խելքով մտածում էր թվաբանության խնդրի վրա, երբ լսեց, որ բակից իրեն ձայն են տալիս.

— Արա՛, Տիկո՛, արա՛, Տիկո՛...

Տիգրանը թռավ դեպի լուսամուտը: Վախկոտ Վարդանն էր, որին հենց դրա համար էլ Վախվար էին կոչում:

— Տիգրա՛ն, իջի՛ր, տես՝ ի՛նչ շուն է եկել մեր բակը, ճիշտ եմ ասում:

— Որտե՞ղ է շունը, Վախվա՛ր,— արդեն բակում հարցրեց Տիգրանը, թեև լավ տեսնում էր, որ երեխաները շրջանաձև հավաքվել էին ավտոգարաժի փակ դռան առջև: Եվ առանց պատասխանի սպասելու, վազեց դեպի խումբը:

Մուգ ու բաց դարչնագույն շուն էր, դունչը՝ սուր ու երկար, աչքերը՝ մելամաղձոտ: Նստել էր շընավարի, առջևի թաթերին հենված և նայում էր իրեն շրջապատած երեխաներին:

— Հաո՛ւ, հաո՛ւ, հաո՛ւ...— հաչելու տնազ էր անում մի փոքրիկ աղջիկ:

— Ղըը՛ղ... ղըը՛ղ...— ատամները ցույց տալով՝ սպառնում էր մի տղա:

Մեկ ուրիշը խաղացնում էր հանած լեզուն և հևում շնավարի:

# ՏԻԳՐԱՆՆ ու ՇՈՒՆԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

— Ի՛հ, ի՛հ, ի՛հ,— վնգստում էր մի պեպենոտ երեխա՝ աչքերն ուրախ փայլեցնելով։

Շունը զարմացած էր։ «Սրանք շուն չե՞ն տեսել իրենց կյանքում».— երևի մտածում էր նա։ Եվ իրոք մի քանիսը նայում էին լուռ և ուշադիր՝ սպասելով արտակարգ բանի։ Առաջ գցած շրթունքները ծպծպացնելով և մատները խաղացնելով, մի տղա սիրաշահում էր շանը։ Երկու-երեքը վազեցին տուն՝ ուտելիք բերելու։ Տիգրանը գոհ էր, որ հավաքված երեխաները կամ իրենից տարիքով փոքր էին կամ հասակակից։

— Ինչու՞ ես հեռու կանգնել, Վախվար,— բոլորին լսելի ասաց Տիգրանը և, խախտելով շրջագիծը, մի քայլով առաջ անցավ։ Շունը ցնցվեց և հատուկ ուշադրությամբ նայեց Տիգրանին։ «Խեղճ է»,— մտածեց Տիգրանը և նրան ցավ պատճառելու, մյուսների մոտ հպարտանալու ցանկություն ունեցավ։

— Վախվա՛ր,— հրամայեց Տիգրանը,— գնա փա՛յտ բեր։

Շան վզի մազերը փշաքաղվեցին. Տիգրանը կծկվեց, բայց արդեն ուշ էր. չէր կարող խայտառակ լինել այդքան երեխաների առաջ, ծաղր ու ծանակի առարկա դառնալ, Վախվարի օրն ընկնել։ Ինքը մինչև հիմա Տիգրան է եղել, Տիգրան էլ կմնա, թեկուզ... և նա փայտը դեմ տվեց շան դնչին։ Շունը գլուխը թեքեց, երեխաները ծիծաղեցին և գոռացին։ Նրանց գոչյուններից Տիգրանը հատկապես լսում էր իր կրկնվող անունը հիացական, քաջալերական՝ նման կեցցեների և ծափերի, նման տոնական հրավառության։ Նա աչքի ընկնելու և հաղթելու հաճույքից փայտը հրեց այս անգամ շան կիսաբաց բերանը։ Շունը ետ քաշվեց ու կպավ ավտոգարաժի փակ դռանը։» Ի՞նչ է ուզում ինձանից, ինչու՞ է տանջում,— երևի մտածում էր շունը,— ես նրան ոչ մի վատ բան չեմ արել։ Չեմ կծել, նույնիսկ չեմ էլ հաչում»։ Եվ երբ երրորդ անգամ փայտը մոտենում էր, նա ոստյուն կատարեց, ատամները խրեց այդ փայտը բռնող ձեռքի մեջ և ցրվող ու գոռգոռացող երեխաների միջից փախավ դեպի փողոցը։ Բակում հարայհրոց էր, մեծ ու փոքր քար ու փայտ էին շպրտում շան վրա և հետապնդեցին, մինչև որ նա անհետացավ մի քանի փողոց այն կողմ, նեղ նրբանցքում։



Փոքր Տիգրանը աղիողորմ լաց էր լինում, շունչը կտրվում էր, և կարծես թե սիրտը կանգ էր առնում։ Վախից ու հուզմունքից նա ամբողջ մարմնով թուլացել էր և վայր կընկներ, եթե նրան երկու կողմից չպահեին։ Նա իրեն այլևս հերոս չէր զգում, թեև բոլորի ուշադրությունը կենտրոնացած էր նրա վրա։ Այդ ուշադրությունը լավ էր, բայց ինքը կուզենար, որ լաց չլիներ ու ոտքերը չդողային։ Ճիշտ է, չվախեցավ, բայց հիմա բոլորը խղճում են իրեն։ Այդ խղճալը լավ էր, որովհետև իրեն մենակ չէր զգում ցավի ժամանակ, սակայն վատ էր, որովհետև ինքը ճնշվում էր, նշանակում է՝ ինքը թույլ է, դժվար է հերոս լինելը, և պետք է լինում ցավ զգալ ավելի, շատ ավելի, քան սպասում էր, շատ ավելի, քան կարծում էր։ Մոր փափուկ գրկում, փայփայանքների և նախատինքների խառը ձայների մեջ, ձեռքը վիրակապած, սրբված, բայց դեռ թաց այտերով՝ փոքր Տիգրանը, հոգնած-ջարդված, ուզում էր քնել։ Հավանաբար նա երազում շուն տեսնի, վախենա կամ նորից ուզենա հերոս լինել, բայց այս անգամ նա գիտի, թե ինչ կգա իր գլխին, շատ լավ գիտի։

ամանակակիցները մեր հիշողության մեջ թարմ են պահել նրա երիտասարդ տարիների վառ հիշատակը: Նրա անկրկնելիորեն վայելուչ ու նրբագեղ կեցվածքը, նրա ազնվական և նուրբ դեմքը, նրա խնամքով սանրված ոսկեհուր մազերը:

Ինքը, սակայն, իր դիմանկարը նկարեց կյանքի վերջին տարիներին միայն:

Սպիտակ, մետաքսամազ մորուքով շրջանակված ծերունազարդ մի դեմք, ճակատին խոր ակոսներ, բերանի անկյունները՝ իջած: Չէին խամրել, սակայն, նրա կապույտ ու պայծառ աչքերը: Նա խորաթափանց հայացքով նայում էր դեպի ապագան ու դեպի անցյալը:

Ֆլորենցիայում շենքերն իրենց գեղեցկությամբ մրցում էին միմյանց հետ, և այստեղ չէին դադարում վեճերը արվեստի մասին: Երաժշտությունն այստեղ ավելի դյութիչ էր հնչում և անսպառ էր ստեղծագործական բերկրանքը: Այստեղ էին կարում այն ժամանակվա ամենաշքեղ հագուստները, այստեղ էին պատրաստում ամենագեղեցիկ ամանեղենն ու ամենանուրբ կահույքը: Բայց ամենից լավ այստեղ նկարում էին, և գեղանկարչական խմբակներն այս քաղաքում ամենաբազմամարդն էին, քաղաք, որ դեռ վաղեմի ժամանակներից անվանել էին ծաղկող (Ֆլորենցիա իտալերեն հենց այդ է նշանակում):



# ԼԵՈՆԱՐԴՈ ԴԱ ՎԻՆՉԻ

Տասնչորս տարեկան էր Լեոնարդոն, երբ հոր հետ եկավ Ֆլորենցիա: Նա ապշել էր, տեսնելով քաղաքի հրաշալիքները: Ամեն մի խաչմերուկում կարելի էր մի հետաքրքիր խոսակցություն լսել: Եվ նա, օգտվելով առիթից, որ իր ներկայությունը ոչ ոքի չի ճնշում, լսում էր այդ խոսակցությունները:

Այնպես աննկատ, որպես օդն ու արևի ճառագայթները, նրա մեջ ներարկվեց Դանթեի պոեզիան: Դանթեն առաջինն էր, որ Ֆլորենցիան ողջ Իտալիայի արվեստի օրրան հռչակեց: Գիտության ու արվեստի ծարավը, որով համակված էր այդ քաղաքը, հավասարապես գերեց նաև Լեոնարդոյին:

Հայրը տեղավորեց նրան իր ընկերոջ՝ հռչակավոր նկարիչ Անդրե Վերոկկիոյի մոտ: Լեոնարդոն դարձավ նրա լավագույն աշակերտը: Ու թեև արվեստանոցում օրը խիստ ծանրաբեռնված էր, Լեոնարդոն ժամանակ էր գտնում նաև ուրիշ առարկաներով զբաղվելու համար:

Նկարիչներն ասում են, որ եթե Լեոնարդոն զբաղվեր միայն նկարչությամբ, նա ավելի շատ գլուխ-գործոցներ ստեղծած կլիներ: Գիտնականները ենթադրում են, որ նկարչությունը խանգարել է նրան կատարելու գիտական կարևոր հայտնագործություններ: Մինչդեռ Լեոնարդոյի մեջ նկարիչն ու գիտնականը անբաժանելի էին: Եվ պետք է ավելացնել, որ նա զբաղվում էր նաև ճարտարապետությամբ, ռազմագիտությամբ, կամրջաշինությամբ, ջրանցքների կառուցմամբ, դրամածուլվածքով և բազում այլ գործերով: Նա ձախողակ մարդու թեթևամտությամբ, մակերեսորեն չէր սահում մեկ զբաղմունքից մյուսը:

Մի առիթով Լեոնարդո դա Վինչին գրել է. «Թող նկարիչը քիչ ստեղծագործի, բայց այդ ստեղծագործությունն այնպիսին լինի, որ զարմանք պատճառելով իր կատարելությամբ, ապշեցնի դիտողին: Իրոք, նրա կտավները շատ չեն: Բայց, այսօր, չորս և կես դար անց, նրա յուրաքանչյուր կտավը մնում է որպես անգնահատելի գոհար՝ մարդկության գանձարանում:

Դյուրահավատ ու սիրալիր, ասես ուշիմ մի պատանյակ լինի նրա ծնկաչոք հրեշտակի կերպարը, որն առաջին անգամ ինքնուրույն կատարման համար հանձնարարել էր նրան ուսուցիչ Վերոկկիոն: Լեոնարդոյի վաղ շրջանի մադոննա Բենուաան զվարթ մի աղջիկ է, որը դյութված խաղում է մանկիկի հետ:

Լեոնարդոն ուսումնասիրում էր խոտաբույսերը, որպեսզի կարողանա ավելի լավ բուժել հիվանդներին: Ժամերով հետևում էր թռչունների թռիչքին, ձգտելով թռչող մեքենա պատրաստել մարդկության համար:

Այնուհանդերձ, տարիների ընթացքում, Լեոնարդոն

սկսեց դառնությամբ նայել կյանքին, ասես հույս չունենալով մխիթարական որևէ բան տեսնել շրջապատում: Եվ, հնարելով ջրի տակ երկար ժամանակ մնալու սարքավորումը, նա իր տետրերից մեկի մեջ գրեց. «Սա ես չեմ հրապարակի, չեմ տարածի չար մարդկանց պատճառով, որոնք այս սարքավորումը կօգտագործեն որպես ընդծովյա ոչնչացման միջոց»:

Լորենցո Մեդիչին, որին «Հրաշալի» մականունն էին տվել, փաստորեն Ֆլորենցիայի թագավորն էր: Նա ցանկանում էր, որ ամբողջ աշխարհը Ֆլորենցիայի ծաղկումն իրեն վերագրի: Զուրկ չլինելով ընդունակությունից, Լորենցոն ոտանավորներ էր գրում:

Ուսումնասիրելով նրան, Լեոնարդոն նկատեց, թե որքա՜ն մակերեսային էր նրա սերը արվեստի նկատմամբ և թե իրականում որքա՜ն անգութ ու դաժան էր այդ մարդը, որը բոլորովին չէր հարգում նկարիչներին և չէր ընդունում նրանց աշխատանքի ոճը: Ամեն ինչ պիտի ենթարկվեր նրա քմահաճույքին:

Լեոնարդոն նկատում էր, թե ինչպես իր ընկերները ստեղծագործության պահին իսկ սկսում էին անհանգստանալ, թե Լորենցոն արդյոք ինչպե՞ս կընդունի նկարը կամ քանդակը, և համարյա անգիտակցորեն, հանուն իրենց հանգստության, սկսում են տուրք տալ նրա ճաշակին: Լեոնարդո դա Վինչիի համար դա անհանդուրժելի էր, և նա Ֆլորենցիայից տեղափոխվեց Միլան, Լոդովիկո Սֆորցա դուքսի մոտ: Սակայն այստեղ էլ վիճակը նույնն էր: Մարդիկ ճամարտակում էին արվեստի նկատմամբ ունեցած իրենց սիրո մասին, մինչդեռ զբաղված էին սեփական իշխանությունն ամրապնդելով և հանուն դրա դիմում էին ամեն տեսակի խորամանկության, չխորշելով նույնիսկ ամենանենգ սպանություններից: Այդպիսի ազնվականների երեսին ճշմարտությունն ասելը անիմաստ բան էր: Նա տեսել էր, թե ինչպիսի ողբերգական վախճան էին ունեցել համարձակ մարդիկ: Նա տեսել էր նաև, թե ինչպիսի փափկասուն կյանք էին վարում նրանք, ովքեր շողոքորթում էին տիրակալներին՝ Ֆլորենցիայում, Միլանում, Հռոմում, Պապի մոտ, ուր նա առիթ էր ունեցել աշխատելու: Ֆրանսիական արքունիքում, որտեղ անցան Լեոնարդոյի կյանքի վերջին տարիները, նա տեսավ նույն արտաքին փայլը, երեսպաշտությունը և անարդարությունը կյանքի ու ճշմարիտ արվեստի նկատմամբ:

Անկաշկանդ ու բնական են Լեոնարդոյի կտավների մարդիկ, այնքան գեղեցիկ, լիարյուն, որ կարծես ըզգում ես նրանց սրտի բաբախյունը:

Քնքշորեն մանկիկի վրա է հակվել տիրամայր Լիտտոն: Նուրբ թախիծով ժպտացող, գեղեցիկ մի դեմք: Այդպես ժպտում են ոչ միայն կյանքի դժվարությունները, այլև բերկրանքները զգացած մարդիկ:

Լեոնարդո դա Վինչին շատ է պատկերել գեղեցիկ կանանց ու տղամարդկանց: Բայց իր ծերության հասակում նա մեծ խնամքով աշխատում էր երիտասարդ ֆլորենցուհու՝ Ջիոկոնդայի դիմանկարի վրա: Թխադեմ, ոչ մեծ աչքերով, նա իր գեղեցկությամբ զիջում էր շատերին: Եվ չնայած դրան, արդեն մի քանի հարյուրամյակ է, ինչ այդ դիմանկարը ապշեցնում է բոլոր նրանց, ովքեր տեսնում են այն: Մարդիկ վիճում են այն մասին, թե ինչ է արտահայտում Ջիոկոնդայի յուրահատուկ դեմքը, նրա հազիվ նկատելի, բազմիմաստ ժպիտը: Այդպես կարող էր հուզել միայն կենդանի մարդը, իսկ Ջիոկոնդան, իր դիմանկարը ավարտվելուց հետո, շուտով մահացավ:

Սակայն դա ի՞նչ նշանակություն ունի, երբ ողջ աշխարհը, շատ դարեր հետո էլ տեսնելու է նրա լիքը, հանգիստ ուսերը, ուժեղ, նուրբ ձեռքերը, ձգված պարանոցը և կյանքին համարձակ նայող հայացքը: Հայացք, որ միանգամայն գիտակցում է, թե աշխարհում շատ բան այնպես չէ, ինչպես կարծում են ու ասում, բայց միևնույն ժամանակ հաստատում է մարդկային պատվախնդիր բանականության ազնվությունը:

*ՄԱՐԳԱՐԻՏԱ ՑԱԽՈՆՏՈՎԱ*



*Լեոնարդո դա Վինչիի գծանկարներից*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 5 Մայիս 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։*

ՎՖ 05482: Պատվեր՝ 458: Տպաքանակ՝ 59800: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/V 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.



Առափնյա ավազոտ ծանծաղուտի վրայով դանդաղ թռչում էր մի ագռավ, կարծես սպառում իր վերջին ուժերը. ծանրացած ու անվստահ թափահարում էր թևերը: Երևի քաղցը ուժասպառ էր արել ագռավին: Թռչում էր և հանկարծ ինչ-որ բան նկատեց երկրի վրա, իջավ ցած և քայլելով մոտեցավ ծանծաղուտում ընկած խխունջին: Վերցրեց խխունջը և նորից օդ բարձրացավ: Բայց հազիվ էր մի քիչ բարձրացել, երբ կտուցը բացեց և ցած գցեց: Խխունջը ընկավ, իսկ նրա հետ թևաբաց իջավ նաև ագռավը. խխունջն ընկավ առափնյա ավազի վրա և չվնասվեց:

Ագռավը երեք անգամ նորից օդ բարձրացավ և երեք անգամ ցած գցեց խխունջը: Դա արդեն բոլորովին թուլացրեց թռչունին, բայց գետափին փոքր-ինչ հանգստանալուց հետո, նորից թռավ, մի քանի մետր բարձրացավ, պտույտներ գործեց քարակույտերի վրա և նորից վերադարձավ այն տեղը, որտեղ ընկած էր խխունջը: Արդեն չորրորդ անգամ նա խխունջը ցած նետեց միայն այն ժամանակ, երբ ցածում նկատեց քարակույտերը: Վերջապես խխունջի կրե պատյանը ջարդվեց: Իր սուր ճանկերով նա բռնեց խխունջի կոտրված պատյանը և սովահարի ագահությամբ սկսեց կտցահարել կակղամորթ կենդանու փափուկ մարմինը:

Այդ դեպքի մասին իր նամակում մեզ պատմեց մի ընկեր, որը մեծ զարմանքով դիտել էր այդ բոլորը և հիացել ագռավի «համառության» վրա: Եվ իսկապես, կյանքը սովորեցրել է շատ կենդանիների այնպիսի հնարքների դիմել, որոնք երբեմն օգնում են նրանց դուրս գալ ամենաանելանելի թվացող վիճակից: Ագռավն այսպես է կոտրում խխունջի պատյանը, իսկ կտցարը՝ փոքր-ինչ այլ կերպ: Կտցարը բռնում է խխունջի պատյանից և այնքան է խփում քարերին, մինչև որ կոտրում է այն:

Մյուս թռչունների համեմատությամբ ագռավները աչքի են ընկնում իրենց ավելի քան զարգացած գլխուղեղով: Եվ հենց այդ է պատճառը, որ երբ ուշադրությամբ դիտում ենք նրանց արարքները, հաճախ տեսնում ենք շատ հետաքրքիր երևույթներ: Այդպիսի մի երևույթի մասին ահա թե ինչ է գրել իր նամակում Ուրալի որսորդներից մեկը:

Մի լեռնային ինժեներ, որպեսզի վարժվի որս անելուն, ամեն օր կրակում էր ագռավների վրա: Բայց մի երկու օր հետո ագռավները հենց որ հեռվից նկատում էին ինժեներին, թռչում, նստում էին սոճու ծառերի կատարներին, այնպիսի բարձրության վրա, որ հրացանի գնդակներն իրենց չհասնեն: Աղբարկղի մոտ, որ-

տեղ սովորաբար հավաքվում էին ագռավները, դատարկ ցախանոցում ինժեները մեծ զգուշությամբ թաքստոց էր պատրաստել իր համար: Այուամենայնիվ թռչունները նկատել էին նրան և, երբ նա մտել էր թաքստոցը, մի ակնթարթում ագռավները բարձրացել էին ծառերի կատարները: Հաջորդ օրը, ինժեները ցախանոց է մտնում իր ընկերոջ հետ միասին, որը քիչ հետո դուրս է գալիս և ծառերի կատարներին նստած



# ԱԳՌԱՎՆԵՐԸ

Պ. ՄԱՆՏԵՅՖԵԼ

ագռավների աչքի առաջ հեռանում: Այս բանն արված էր այն հաշվով, որ թռչունները տեսնեն հեռացող մարդուն, չվախենան, նորից իջնեն աղբարկղի վրա: Բայց նրանք, այս դեպքում էլ չխաբվեցին: Ագռավներից և ոչ մեկը ցած չիջավ իր անվտանգ բարձրությունից, այնքան ժամանակ, մինչև որ ձանձրույթից հոգնած ինժեները դուրս եկավ ցախանոցից և տուն գնաց:

Զախորդ որսորդի ինքնասիրությունը վիրավորվեց, մի մարդ, որ գերազանց գնահատականով էր ավարտել բարձրագույն կրթությունը և դիպլոմ ուներ. ձեռքին՝ չկարողացավ խաբել սովորական ագռավներին:

Մյուս անգամ նա ցախանոց մտավ իր երկու ընկերների հետ միասին: Իսկ հետո ընկերներին ետ ուղարկեց:

Երբ ընկերներն արդեն հեռացել էին, ինժեները նայեց ցախանոցի դռան ճեղքից... Ագռավները նստած էին ծառերի կատարներին: Հաջորդ օրը նա ցախանոց մտավ իր երեք ընկերների հետ միասին: Վերջապես նա կարող էր արդեն հավատալ իր հաղթանակին: Երբ նրա երեք ընկերները դուրս եկան ցախանոցից, անցան բակով, հեռացան աչքից, ագռավներն անմիջապես իջան աղբարկղի վրա:

«Այս պատահական փորձից,— գրում էր իր նամակում ինժեները,— կարծեք կարելի է եզրակացնել, որ եթե երբեմն մարդիկ «ագռավներ են հաշվում», ապա ագռավներն էլ մարդկանց են հաշվում, չնայած, որ նրանք երեքից այն կողմը այլևս հաշվել չեն կարողանում»:

Բայց մի՞թե գաղտնիքը հաշվելու մեջ է: Հնարավոր է, որ թռչունները պարզապես հիշել են «թշնամու» արտաքինը և չեն իջել սոճիների կատարներից, մինչև որ իրենց աչքով չեն տեսել նրան հեռանալիս: Իսկ երբ ցախանոցից դուրս են եկել երեք հոգի և իրար հետ հեռացել, ագռավները կարող էին շփոթել, խառնել և նրանցից մեկին դնել որսորդի տեղը:

Ընդհանրապես ագռավները շատ լավ են հիշում մարդկանց դեմքերը և կազմվածքները, առանձնապես այն մարդկանց, որոնք անհանգստացնում են իրենց:

Թարգմ. Վ. ԱՐԱՄՅԱՆԻ





# Գարուն

ՀՈԲՈՍ ԱԳԵՐ

Թափվում է, թափվում
Անձրևը վարար,
Ջրերն են հորդում
Բլուրներն ի վար։
Գետը բարկացած
Ելել է ափից,
Կաքավն է երգում
Մոտիկ քարափից.
— Բարո՜վ ես եկել,
Գարու՛ն իմ, գարու՛ն,
Քեզնով է աշխարհն
Ու կյանքը սիրուն։
Դու՛ ես աշխարհի
Կարոտն ու հույսը,
Քեզնով են ժպտում
Ծաղիկն ու բույսը։

Նկ. ՌԱՖԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Ինդեքս 77806
10 կ.